# ԼՈՌԻԻ ԿԻՒՐԻԿԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐՈՒ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՂԷ.

# ԼՈՌԻԻ ԿԻՒՐԻԿԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐՈՒ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1923

# ԼՈՌԻԻ ԿԻՐԻԿԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐՈՒ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ

Հ. ՂԵՒՈՆԴ ՄՈՎՍԷՍԵԱՆ

ՄԽԻԹ. ՄԻԱԲԱՆ



ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1923

# Ա Զ Դ

Մեր թանգարանի հայկական դրամները աչքէ անցնելու ժամանակ ուշադրութիւնս գրաւեց Կորիկէի դրամը: Այս առիթ տուաւ ինծ բրբրելու հայ պատմագիրներու հատուկտոր յիշատակութիւնները Կորիկէի մասին: Ձեռքիս տակ գտայ բաւական նիւթ կազմելու Կորիկեանց ամբողջական պատմութիւնը, զոր կը ներկայացնեմ՝ այսու գիտութեան, համոզուած ըլլալով որ եթէ ոչ մեծ գէթ փոքրիկ ծառայութիւն մը մատուցած կ՚ըլլամ՝ Հայոց պատմութեան ուսումնասիրութեան: Միայն այսպիսի մենագրութիւններով է որ պիտի յաջողի Հայոց պատմութեան հոյակապ կերտուածքը կառուցանել: Փափագս էր կցել ուսումնասիրութեանս աշխարհագրական համառօտութիւն մը Կորիկեան իշխանութեան գաւառամասին վրայ, բայց ստիպուած ըլլալով բացակայիլ Վիեննայէն, հրաժարե-

ցայ ծրագրէս, որուն կը յուսամ՝ անդրադառնալ ուրիշ առթիւ մը:

Մասնաւոր պարտականութիւն կը զգամ՝ նաեւ հրապարակաւ խորին շնորհակալութիւնս յայտնել "Հանդէս Ամսօրեայ„ի մեծարգոյ խմբագրապետ՝ Հ. Ն. Վ. Ակինեանին, որ իր խորհուրդներով ուղղեցոյց եղաւ ինծ ազնուաբար:

ՀԵՂԻՆԱԿԸ

# ՑԱՆԿ

# ԼՕՌԻ

## ԵՒ ԿԻՒՐԻԿԵԱՆ ՀԱՅ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ ՃԵՂԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

Բագրատունի տան Կիւրիկեան ճիւղը աւելի քան հարիւր տարի իշխեց Լօռիի մէջ, թէեւ Անիի Հայ կենդրոնական պետութեան գերիշխանութեան տակ, բայց իբրեւ ինքնակաց թագաւորութիւն մը։ Հայոց պատմութեան մէջ խաղաց անիկա կարեւոր դեր մը եւ գործեց նշանակալից ազդեցութիւն Հայ կեանքի վրայ քաղաքակրթական տեսակէտով։ Ցեղին ծագման զարգացման եւ անկման մասին չկայ տակաւին գոհացուցիչ աշխատութիւն, թէեւ տոհմային պատմագրութիւնն եւ երկրին հին կոթողները պահպանած են բաւական առատ այսպիսի աշխատութեան մը համար։ Պիտի փորձենք հետագայ էջերուն մէջ տալ համառօտ ամփոփում մը այսպիսի անմիջակ, մանաւորապէս Կիւրիկեան ցեղին վերաբերեալ նիւթերու, յուսալ թէ օգտակար պիտի ըլլայ այն ապագային կառուցանելու Հայոց քննական պատմութեան մը կերտուածքը։

Ուղղակի մեր նիւթին մերձենալէ յառաջ կարեւոր կը համարինք հարեւանցի ակնարկով մը ծանօթացնել այն գաւառամասին անցեալ պատմութիւնը, որ Ժ— ԺԲ դարերուն հող եղաւ Կիւրիկեան փոքրիկ թագաւորութեան։

Ա.

Լոռի-Տաշիրք վերաբերելով Գուգարաց նահանգին, անոր անցեալը սերտ կապուած է նահանգիս պատմութեան հետ։

Գուգարք՝ հիւսիսային Հայաստանի այս նահանգը իբրեւ միջնասահման Վրաց եւ Հայոց, երկու դրացի ազգերու համար դարերու ընթացքին կռուախնձոր նկատուած էր։ Երբ կը զօրանար մէկ կամ միւս կողմը՝ կը տիրանար անոր։ Այսպէս հնագոյն շրջանին։

Ստրաբոն կը յիշէ Գուգարքը՝ իբրեւ Կուրի մէկալ կողմը գտնուող արգաւանդ երկիր մը, զոր Արտաշէս եւ Զարեհադրիս (190էն առաջ Ն. Ք. Քր.) Կղարջքի եւ Տայոց երկրին հետ Վրաց ձեռքէն առած էին[1]։ Տիգրան Մեծ անոնցմէ[2] կազմեց սահմանակալութիւն մը իր տէրութեան հիւսիսային սահմանը պաշտպանելու եւ դրաւ զայն բդեաշխի մը իշխանու-

---

[1] Տես Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 113։

[2] Marquart, Eranšahr, Berlin 1901, էջ 95. 165 եւ յաջ.։

թեան տակ, զոր Ագաթանգեղոս[1] բդեաշխ «ի Մարդաց կողմանէ» կը կոչէ։ Արշակ Բ․ի ժամանակ գաւառս իշխաններ ապստամբեցան, որոնց մէջէն Փաւստոս[2] կը յիշէ Գուգարաց բդեաշխը եւ ասոր հետ Ձոր եւ Կղարջ գաւառներուն տէրերը, եւ անցան Վրաց, բայց քիչ վերջ Մուշեղ զանոնք նորէն ետ առլով՝ Պապայ հպատակեցուց՝ յառաջուան պէս Կուրը՝ Հայոց եւ Վրաց մէջ սահման որոշելով։ Հայաստանի բաժանման տեն 387ին, Գուգարք Վրաց անցաւ եւ Վրաց աշխարհին հետ Պարսից գերիշխանութեան տակ մնաց մինչեւ 591[3]։ Մովսէս Խորենացի[4] կը յիշէ Միհրան մը (իրր 330 յ. Ք.), որ էր «առաջնորդ Վրաց եւ բդեաշխ Գուգարացւոց»։ Ե. դարուն սկիզբը Գուգարացւոց, յաւելեալ Տաշիրքի տէր կը յիշատակուի Աշուշա բդեաշխը, որ Ս. Մաշտոցի աշակերտներէն կ'ըլլայ, երբ ասիկա քարոզութեամբ կը շրջէր Տաշիրքի կողմերը։ Հաւանօրէն ասիկա էր նաեւ այն Աշուշան, որ Վարդանանց պատերազմին կը յիշուի իբրեւ Գուգարաց բդեաշխ «այր խելացի եւ խորհրդական»[5]։ Հայ նախարարներու, Վրաց եւ

1 Ագաթանգեղոս, Պատմութիւն, Վենետիկ 1862, էջ 597, 630։

2 Փաւստոս Բիւզանդ, Պատմութիւն Հայոց, Վենետիկ 1832, էջ 159, 211։

3 Հիւբշման, անդ, էջ 114։

4 Մովս. Խոր. Պատմ. Հայոց, Վենետ. 1865, 191։

5 Աշուշայի նկատմամբ տես Հ. Ն. Ակինեան, Հանդ. Ամս. 1907, էջ 121–126 եւ 296–300։

Աղուանից թագաւորներու հետ Աշուշա բդեաշխըն ալ կանչուեցաւ Յազկերտ Բ.ի մօտ, եւ ստիպա էր որ խորհուրդ կու տար պատաքուած ուրանալ քրիստոնէութիւնը, որպէս զի կարենան հայրենիքը վերադառնալ ու պաշտպանել անարգանք ժողովուրդը։ Բայց երբ նախարարները անոր խորհրդեան հետեւելով ազատեցան ու վերադարձան հայրենիք՝ Յազկերտ Վրաց եւ Աղուանից թագաւորներուն հետ զԱշուշա ալ իր մօտ պահեց (Փարպ. էջ 191)։

Հազիւ 455ին հրաման տուաւ վերադառնալ[1], եւ ընդայ տալով կրցաւ իրեն հետ առնուլ փեսայակից Հմայեակ Մամիկոնեանին (Վարդանի եղբօր) Վահան, Վասակ եւ Արտաշէս որդիները, զորոնք Վասակ Սիւնի Պարսկաստան ղրկած էր մահուան դատապարտել տալու։ Աշուշա բերաւ զանոնք Գուգարք եւ յանձնեց իրենց մօր՝ Ձուիկին, իր կնոջ՝ Անուշվռամի քրոջ, որ բդեաշխին մօտ կ՚ապրէր։ Այս մանրամասնութիւնները, որ կը հաղորդեն հայ պատմագիրները Աշուշայի մասին՝ յերեւան կը բերեն մի եւ նոյն ժամանակ, թէ ինչպէս սերտ էր յարաբերութիւնը Գուգարաց եւ Հայոց մէջ. ոչ միայն արենակցական կապով կապուած էին անոնք Մամիկոնեան նախարարական տան հետ, այլ եւ քաղաքական խնդիրներու մէջ միասին եւ միաբան էին Հայոց

[1] Ղազար Փարպեցի. Պատմ. Հայոց. Վենետ. 1873. էջ 183.

հետ. հաւասարապէս շահագրգռուած հասարա-կաց ճանապարհէն։ Եւ որդէն Յաշխրքը իւր Յուրաստ մայրաքաղաքով, որ էր «ամէն րդեշխին», բնակչութեան մեծագոյն մասով հայկական էր, հայ եպիսկոպոսներով. նոյն իսկ եկեղեցւոյն պաշտօնական լեզուն հայերէն էր։ Ասկէ յայտնի է որ Դուգարայ յարաբերութիւնը Հայ ոգհեռ աւելի անձուկ էր քան որ Վրաց հետ, թէեւ իրրեւ երկու աշխարհաց սահմանադլուխ հաւասարապէս կարեւոր նշանակութիւն ունէր երկու ազգաց յարաբերութեանց համար, այնպէս որ Դուգարայ մայրաքաղաքն Յուրաստ, Հայոց եւ Վրաց յարաբերութեանց օղակը կը կազմէր[1]։

Դուգարք 591ի դաշինքով (ընդ մէջ Խոսրովու եւ Մորիկայ) անցաւ Յունաց եւ թէեւ 602 ին Խոսրով կրկին իւր սահմանն ըրաւ, սակայն 624—628 Հերակլի արշաւանքներուն հետեւութեամբ՝ դարձեալ Յունաց անցաւ։

Այնուհետեւ Դուգարք ժամանակ մը մնաց Վրաց իշխանութեան տակ մինչեւ որ Արաբացիները տիրապետելով Հայաստանի եւ Վրաստանի, տիրեցին Դուգարքին ալ։ Թէպէտ 782 ին Սմբատ Բագրատունւոյն որդիները Յաշխրքն ու Աշոտը եւ Հայկական ուրիշ գաւառներ մաքրեցին Արաբացիներէն, սակայն շատով րագմաթիւ արշաւանքներու եւ անողորմ

[1] Այս մասին աւելի ընդարձակ տես Հ. Ն. Ակինեան. Կիւրիոն կաթողիկոս Վրաց. Վիեննա 1910. էջ 87–90։

կառավարութեան ենթարկուեցան։ Ինչպէս Բուղղայի արշաւանքը 850 ին, որ աՀագին աւերում եւ կոտորած գործելէ ետք, անՀամար գերիներով Բաղդատ գնաց, որոնց մէջ էր Սեւորդեաց Սանասնայոց ցեղը, որ քրիստոնէութիւնը չուրանալուն պատճառաւ 854 ին բանտին մէջ նաՀատակուեցաւ։ Այնուհետեւ Գուգարքը սկըսաւ Հարկ վճարել Բաղդատի ամիրապետներուն։ Դեբեդա գետին ձախ կողմն ինկող երկիրներն իրենց վրայ դրուած Հարկը կը յանձնէին Տփղիսի ամիրային, իսկ Տաշիրք, Ձորոփոր եւ Արդահան ենթարկուած էին Հայաստանի ամիրային, որ Դուին կը նստէր[1]։

Այսպէս թէեւ Բագրատունեաց առաջին փորձն անյաջող անցաւ, սակայն անոնք չյուսաՀատեցան. Հետզհետէ զօրանալով շատ երկիրներ ձեռք բերին, որոնց մէջ էր Գուգարքի մէկ մասը։

Աշոտ Ա. 886 ին Հիմնելով Բագրատունեաց Հարստութիւնը նուաճեց նաեւ Գուգարքն ամբողջութեամբ, ու իր եղբայրը զԱբաս անոր վրայ կառավար իշխան կարգեց։ Բայց Աբասայ կառավարութենէն գոհ չմնաց Գուգարք։ 888 ին ապստամբութեան դրօշը պարզեց մինչ Աբաս Վանանդ գացած էր խլրտումներ ցածցնելու։ Այս անգամ Գուգարաց ապստամբութիւնը նուաճելու Համար Աշոտ Ա. Թագաւորին կողմանէ ղրկուեցաւ Սմբատ որ-

[1] Հմմտ. Չամչեան, Պատմ. Հայոց. Բ. էջ 408։

նեղ անցքերը բռնեց արեւելեան կողմէն, առ-
կայն Յուսուփ իմանալով ամրապարեց Հարաւ-
արեւելեան կողմն եւ մտաւ Շիրակայ գաւառը։

907ին Սմբատ հանգիստ կ'ապրէր Տա-
շիրքի մէջ, երբ քանի մը հայ նախարար Վրաց
Ատրներսեհ թագաւորին հետ դաւադրութիւն
մը կազմեցին զինքը սպաննելու, բայց թագաւորն
իմանալով գնաց Շիրակ եւ ջարդեց ու ցրուեց
դաւադիրները։ Յուսուփ նորէն մտաւ Հայաստան
եւ Սմբատ իրեններէն լքուած՝ 909ին զօրքով
անցաւ Գուգարքի Օձուն գիւղն եւ Կղարջքի
անմատչելի այրերուն մէջ պաշտպանեցաւ։ Յու-
սուփ վերադարձաւ Դուին իրեն հետ տանելով
Յովհաննէս կաթողիկոս, իսկ Սմբատ Գուգարքէն
Շիրակ անցաւ, ուր 910ին հաւաքեց իրեն հա-
ւատարիմ մնացած նախարարներն եւ իր որ-
դիներու առաջնորդութեամբ ղրկեց Յուսուփին
վրայ. Սմբատին հետ միացաւ Սեւորդեաց ցեղն
ալ, բայց արդէն առաջին կռւոյն թագաւորին
դէմ դաւաճանեցին եւ Յուսուփի ձեռքը յանձ-
նեցին իրենց առաջնորդը՝ Մուշեղ արքայորդին։
Մէկ տարի ետք Յուսուփ զօրք ղրկեց Տաշիրք եւ
Կանգարքը ասպատակելու։ Այս երկարատեւ
կռիւներս վերջացան երբ Սմբատ Յուսուփէն
գերի բռնուեցաւ եւ Դուինի մէջ գլխատուե-
ցաւ։ Մարմինը բերին Օձուն եւ ամփոփեցին
եկեղեցւոյ մէջ, ուր մինչեւ ցայսօր կանգուն է
մահարձանը։

Սմբատին յաջորդեց Աշոտ Բ. Երկաթ, որ
շուրջը հաւաքելով իր քաջերը՝ առանց դա-

գարեկու. բոլոր քաղաքներն ու ամրոցներն ազատեց թշնամեաց ձեռքէն, որոնց կարգին նաեւ Դուգարք, զոր յանձնեց վերստին նախկին կառավարիչներուն՝ Գնթունեաց երկու եղբայրներուն: Բայց երկար չտեւեցին Աշոտ Երկաթի յաղթութիւնները. Նախարարները լքեցին զինքը եւ սկսան իրարու հետ կռուիլ: Երկիրը մնաց անպաշտպան: Այս միջոցին, այս ինքն՝ 917ին, Յուսուփի զօրքերը նորէն Հայաստան մտան եւ անգթաբար կոտորեցին ժողովուրդները:

Գնթունի երկու վերակացուները՝ Վասակ եւ Աշոտ յարմար առիթ համարելով արհամարհեցին Աշոտ Երկաթի գերիշխանութիւնը եւ 921ին իրենք զիրենք անկախ հրատարակեցին: Հայոց թագաւորը փութաց պատժել Դուգարաց վատարանջութիւնը: Թէեւ ի սկզբան Շամշուլդէ մեծ բերդին մէջ ամրացած ապստամբները չկրցաւ նուաճել զիրենք, բայց Ուխուէթ[1] բերդին քով կրցաւ խորտակել Դուգարաց ոյժը եւ խոնարհեցնել: Ափխազաց Գուրգէն իշխանին ներկայութեան, որուն զինած էր թագաւորը, կնքուեցաւ հաշտութիւն. Գնթունի եղբայրներն հաստատուեցան իրենց իշխանութեան մէջ: Բայց քիչ վերջ Աշոտ Գնթունի սահմանակից թշնամիներու հետ մղած պատերազմի մը մէջ իյնալով, երկիրն անտէր եղաւ Վասակ առանձին, ունենալով իր նիստը Շամշուլդէ բերդին մէջ:

---

[1] Հիմայ կը կոչուի Աղդոր. Անիսկեայի մօտ:

Վասակ Գնթունի սակայն դեռ չէր խրատուած, վերստին ապստամբութեան ձեռնարկեց ու Ափխազաց Գուրգէն մեծ իշխանին հետ միացաւ եւ խռովեաց. Համշոյլցէ բերդը անոր բերդերէն միոյն հետ փոխանակել։ Վասակին այս պայմանը Գուրգէն յանձն առաւ եւ երդմամբ խոստացաւ կատարել. Բայց այս դրժելով ձերբակալեց զՎասակ։ Համշոյլցէի շուրջը ծագած կռիւներն մանրամասնօրէն կը պատմէ Յովհ. կաթողիկոս։ Գուրգէնի զօրքերուն դէմ օգնութիւն կը խնդրեն Վասակեանք Հայոց թագաւորէն. Աշոտ կը հասնի բանակով, պարիսպներու առջեւ կը վանէ Ափխազաց բանակը եւ կրկին կը խաղաղէ Գուգարաց երկիրը։ Այս ապստամբութիւնը նուաճելէ ետք Աշոտ՝ Ուտի աշխարհը գնաց, ուր շատ կը սիրէր, ու այնտեղ ալ ապստամբներէն մի քանին նուաճելէ ետք՝ Ցլիկ Ամրամը իր իշխանութեան մէջ հաստատեց, որ նոյն տեղուան կողմնապահն էր։

Այսպէս Գուգարաց եւ Ուտի նահանգները միացին Հայոց իշխանութեան ներքեւ. մինչեւ Աշոտ Գ., որ իր որդին Գուրգէն դրաւ թագաւոր Աղուանից երկրին՝ տալով անոր Տաշիր, Սեւորդւոյքն Ձորագետին, Կայենն, Կայծոն, Խորխոռունիք, Բաղկերա եւ ուրիշ շատ մը բերդեր, որոնց Վերք Սոմխէթ ընդհանուր անունը կու տան։ Գուգարաց եւ Արցախի այս փոքրիկ իշխանութիւնը Դաւիթ Անհողինի ժամանակ եւ վերջէն ալ յաջորդին՝ Կիւրիկէ Ա.ի ատենն աւելի ընդարձակուեցաւ ու շէնցաւ եւ յընթացս

ժամանակի իրեն կցեց Տաւուշ, Գարդման, Փա-ռիսոս, Կողթ, Ջաւէ եւն վայրերն, որ հետեւեալ սահմանին մէջ կ'ամփոփուին. արեւելքէն Ա-ղուանից աշխարհ կամ Գանձակ գաւառ, արեւ-մուտքէն Կղարջք-Անգարա, հիւսիսէն Կուր գետ եւ հարաւէն Շիրակ ու Այրարատ։

Անշուշտ անհաշտ վրացին լաւ աչքով պիտի չնայէր այս մեծ պատնէշին, զոր կը կանգնէր Լոռիի հայ թագաւորութիւնը իր առջեւ. եւ որ մի անգամ ընդ միշտ պիտի արգահատէր մայր Հայաստանը բառ կամի անձնգութիւններէ եւ պի-տի հաստատէր հիւսիսային նահանգներուն ան-կախութիւնը։ Սկսաւ երկարատեւ կռիւ մը Լոռիի թագաւորներուն եւ Վրաց մէջ, ինչպէս կը տեսնուի Կիրակոսի խօսքերէն (էջ 72). «Իսկ Կիւ-րիկէ Բագրատունի որ ի Լոռէ քաղաքէ, զամե-նայն ժամանակս իւր կացեալ ընդդէմ Վրաց ի հաստատութեան պահէր զհայրենիս իւր,։ Սա-կայն այս անգամ ալ տեսաւ Վրացին որ պա-տուաւոր կռուով պիտի չկարենար տիրանալ այս գաւառներուն ու զինք խորամանկութեամբ եւ յաջողեցաւ. «Եւ յետ մահուան (Կիւրիկէ Ա.) զուեալք ի Վրաց որդիք նորա՝ ելեալ ի տանէ հայրենեաց գնացին ի Պարսիկս¹, Դաւիթ եւ Աբաս եւ առնուն ի նոցանէ ի ժառանգութիւն զՏաւուշ եւ զՄածնաբերդ եւ զայլ տեղիս, ... (Կիր. 72)։ Հոս ալ հանգիստ չեն գտներ. քիչ

---

¹ Պարսիկ բառով մեր միջին դարու պատմագիրները շատ անգամ կը հասկնան Ղազարի նահանգն, որուն մայ-րաքաղաքն էր Պարտաւ։

եաց պարոնեններըը սկսան նեղել ու վերջապէս Ցաւուշ ամուր բերդը ձեռքերնէն առին, եւ Կիւրիկեններու ցեղը աքսորուեցաւ. Մանճաքերդի մէջ ամփոփուիլ (Կիր., էջ 72 եւ Սամուէլ, էջ 133)։ Բայց կ'երեւայ թէ վերջէն կամ բարեկամութեամբ եւ կամ պատերազմով տիրեցին Նոր Բերդին, ինչպէս որ Մխիթ. Այրիվ. (էջ 58) կ'ըսէ. «Իսկ ի զարմէ թագաւորացն Բագրատունեաց մնացին ի Վիրս եւ ի Մանճաքերդ եւ ի Նոր Բերդ, որք կալան զբազում գաւառս եւ շինեցին բերդս բազումս։ Թէպէտ Դեմետրէի՝ Վրաց թագաւորին որդին Դաւիթ «այնքան բարեսրտութիւն ցուցանէր՝ մինչ զի առաքէր եւ կոչէր զթագաւորն Կիւրիկէ (1185-ին) որդի Դաւթի (Անհողին) թագաւորի Բագրատունւոյ, եւ խոստանայր նմա դարձուցանել ի նա զժառանգութիւն նորա, զոր նախնեացն իւրոց հանեալ էր ի նմանէ եւ այսպէս պարգեւօք յուղարկէր զնա մամագիր եղեալ նմա. (Հայապատում Բ. էջ 389)։ Սակայն տարաժամ՝ մահը արգելք եղաւ արդարութեան հաստատման։ Այնուհետեւ արտաքսուած իրենց բնիկ հայրենիքէն մնացին ժամանակ մը օտար երկիր անձին բերդերու մէջ. վերջին իշխանը կը յիշուի Սարգիս որ որդի էր Թաղիադինի (1257ին)։ Իսկ թէ անկէ ետք ինչ եղաւ Կիւրիկեններու ցեղը, չի գիտցուիր. թէպէտ շատ հաւանական է կարծել թէ Ղարաբաղի Մելիքները, որոնք նմանապէս նոյն բերդերուն մէջ ամփոփուած էին, յառաջ եկած ըլլան Կիւրիկեան՝ Բագրատունի հայցեղէն։

Բ.

Հ. Մ. Չամչեան, Պատմ. Հայոց, Բ. 1046, առանձին գլխով մը խօսելով Աղուանից պատմութեան եւ այն շրջանին վրայ ուր Կիւրիկեան Թագաւորութիւնն սկիզբ կ'առնու, կ'ըսէ. "Այլ յաղագս Թագաւորացն Աղուանից Հայկազանց ոչ կամեցայք որոշակի ինչ կարգել. զի ոչ ինչ բանք լինին զնոցանէ ի գիրս մեր, խառն են յոյժ եւ անստոյգ ... եւ աւանդեալ հատուկտոր"։ Ինչ որ Հ. Չամչեան գրած է պատմել մեզի, նորէն ամբողջ գալ մը լռած է։ Իրմէ ետքը շարունակեց մէկը, որ ամփոփէր այն "Հատուկտոր, աւանդութիւններ", որոնք վայրափափանի ցրուած են հին պատմիչներու քով եւ արձանագրութեանց մէջ։ Brosset[1] Վրաց պատմութեան ուսումնասիրութեան եւ ապա Լալայեանց[2] Բորչալուի ազգագրութեան առթիւ թէեւ փորձած են խօսիլ նաեւ Կիւրիկեան ցեղին պատմութեան վրայ, բայց այն շատով միայն, որչափ

1 Brosset, Additions et éclaircissements à l'histoire de la Géorgie, St. Pétersbourg 1851, էջ 277 եւ յաջորդ էջեր ու զանազան ակնարկութիւններ. Նոյն՝ Monographie des monnaies arméniennes, St. Pétersbourg 1839, էջ 30. Նոյն՝ Description des monastères arméniens d'Haghbat et de Sanahin, St. Pétersbourg 1863. Նոյն՝ Les Ruines d'Ani histoire et description, St. Pétersbourg 1860, առանձին գործ Brosset միշտ անդրադարձած յիշատակութիւններ եւ դիտողութիւններ ունի Կիւրիկեան Թագաւորութեան վրայ գրեթէ իր բոլոր գործոց մէջ.

2 Լալայեանց՝ Ազգագրական Հանդէս. "Բորչալուի գաւառ", 1901. էջ 271.

ամփոփութեանց համար, քան վերջնական պատմութիւնն հիւսել, որուն ժամանակն չէ հասած տակաւին։ Շատ զգալի է մեզի մանաւանդ Կիլիկեան թագաւորութեան ընդհանրու-թեան մասին ժամանակակից աղբիւրներու պակասութիւնը։

Ի՞նչ շարժառիթով, ի՞նչ նպատակի ծառայելու համար եւ ե՞րբ հիմնարկուեցաւ թագաւորութիւնս։ Ահաւասիկ հարցումներ, որոնք առաջին վայրկեանին իսկ կ'ելլեն մեր առջեւ։

Հիւսիսային Հայաստանի այն երկրամասը զոր Տաշիրք կ'անուանենք, ինչպէս, պատմութեան ընթացքը ցուցուց, ի սկզբան՝ «բդեաշխ», եւ ապա «կուսակալ իշխան», «փերակացու», «կողմնապահ», յորջորջանքներն կրող առաջնորդներէ կը կառավարուէին։ 972 թուին յանկարծ «թագաւոր», տիտղոսով կը յիշէ անոր տէրը Ուռհայեցին։ Այս երեւոյթին մեկնութիւն տալու համար կարելի էր ենթադրել, թէ Հայ նախարարական կազմը նոր կերպարանափոխութիւն կրեց Բագրատունի տան որ ըստ օրէ զարգացող նոր տիրապետութեան շրջանին։ Արդեամբք ալ կը տեսնենք որ Հայաստանի ծայրագաւառները կամաց կամաց կ'անջատուին կեդրոնական իշխանութենէն եւ թէեւ անոր գերիշխանութեան տակ, բայց մէկ մէկ անկախ իշխանութիւններ եւ թագաւորութիւններ կը կազմեն։ Այսպէս Վասպուրականի մէջ 908ին կը սկսի Արծրունեաց թագաւորութիւնը, Բասեն-Վանանդ գաւառներու մէջ կը կանգնուի Կարսի

փոքրիկ հայ թագաւորութիւնը, նոյնպէս հետզհետէ Սիւնիքի մէջ եւ Կապանի մէջ, հուսկ յետոյ Ժ. դարու վերջին քառորդին Տաշիրքի մէջ թագ կը կապէ Գուրգէն՝ Սմբատ Բ.ի եղբայրը։ Թողունք միւս փոքրիկ իշխանութիւնները։ Ինչո՞ւ կը բաժնուէին ասոնք կենդրոնական պետութենէն՝ Անիի օրինաւոր թագաւորէն։

Պատմաբանին է պատասխանել։ Ստեփաննոս Օրպէլեան նոյնպիսի հարցման առջեւ կը պատճառաբանէր՝ Սիւնեաց անջատումը չյիշելու համար (էջ 219—220). «Սոա Սիսական որ ի Հայկայ, երբեմն խառնեալ էր ընդ թագաւորական ցեղն Արշակունի եւ Պահլաւկայ, եւ երբեմն ընդ խաղրայ թագաւորութեանն, եւ հուսկ յետոյ՝ ընդ Բագրատունիսն, բայց երբէք ոչ ըմբռնեցան ի հայրենի տէրութեանցն։ Իսկ յետ յոլով ժամանակաց՝ մինչ դուռն բացին նախ Արծրունիքն եւ թագ կապեցին ընդդէմ Սմբատայ՝ Հայոց թագաւորի, թագ կապեաց եւ Աղբերանց Վայոց բղեշին, թագ կապեաց եւ Աղուանից Համամ, մեծարէր Աշոտին զՎասակ Սիւնի թագ կապել՝ եւ նա ոչ կամեցաւ ապստամբական անուն ժառանգել։ Այս ի նուազել տէրութեանն Բագրատունեաց եւ ի զօրանալ ձեռինն իսմայէլականի՝ հաւանեալ բաժանեալ եղեն ամենայն ըստ հաճոյս գլխաւոր նախարարացն՝ Վասպուրականին եւ Վրացին եւ Աղուանից եւ Ձորոյգետացիքն որ Կիւրիկեանքն կոչին, եւ Կարուցն եւ Վանանդայն որ Թամեանք կոչի. այս Սմբատ՝ որդի Սահակայ որդւոյ Աշոտայ...

յարեալ ի մեծ ախտալէքն, որ էր ի Դաւրէժ յԱտրպատական աշխարհի, նաեւ յՄայ Ասիրայ, որ իշխէր եւ գրանն Գարբանդայ, եւս եւ Աղուանից տերանցն, որք վասն տաւել սիրոյ ծանուցանէն մեծի սուլտանին խարաանու, եւ հրաման առեալ ի նմանէ Թաղ կալեն գեղեցկահաւակ եւ վայելչագիտակ առնն Հայկազնոյ Սմբատայ Սիւնեաց անտառն։ Եւ զի յայնմ ժամանակի Թագաւորին իշխէին միայն Շիրակայ եւ Այրարատայ մինչ ի Գեղամ եւ մինչ ի յՍիւնիսն եւ մինչ ի կարին եւ մինչ ի Վասպուրականի սահմանն եւ մինչ ի Ջորոյգետն եւ մինչ ի Գարգման, եւ *Սիւնիք կարեալ էր ի նոցանէ. վասն որոյ ոչ ինչ ըրէական մեղս համարեցաւ Սմբատ: Զի եթէ Բագրատունիքն*, գերութեամբ իմ անեալ էին ի Հրաչէէ՝ *այնմ արժանի գտան*, այս քանի եւս առաւել սոցա անկ էր որ ի Հայկայ երեւելի Հարաղատութեամբ սրգիք զՀայս փոխանակելով եւ ազատութեամբ եկեալ Հասեալ էին մինչեւ ցայժմ"։ Ի Հարկէ այս արդարացուցումը յուծումն չէր պատմական գէպքերու, որոնք քաղաքագիտական-գիւանագիտական պատճառներ կ'ենթադրեն։ Թերեւս նկատուի ժամանակին մէկ Հիւանդութիւնը, որ սակայն դարձեալ առանց արտաքին շարժառիթի չէր կրնար վերակէլ բոլոր ծայրագաւառներու։ Թագաւորնի սան ուժի "Նուազելն" անշուշտ գլխաւոր ազդակներէն մին էր. կենդրոնական իշխանութիւնը բաւական ուժ չէր զգար՝ ի Հնազանդութեան

պահելու այն կողմերը ուր ազատասիրութեան հուրը միշտ վառ եղած էր, Հակառակ կենդրոնական իշխանութեան բուռն միջոցներուն, ինչպէս տեսանք։ Այս խորհուրդներն ալ ի կարգին անշուշտ պարզապէս ըմբոստութեան նշան չէին հանդէպ կենդրոնական իշխանութեան, ունէին արտաքին գրգռապատճառներ ալ, ըլլան անոնք արաբ կամ պարսիկ կամ յոյն եւ կամ վրացի դրացիներէն։ Յատկապէս Գուգարքի Համար ամենէն աւելի աչքի պիտի իյնան Տփղիսի, Արդանուչի եւ Աբխազաց վրական իշխանութիւնները, որոնք ինչպէս դէպի Բասեն-Վանանդ, նոյնպէս դէպի Լոռի պիտի ուղղէին իրենց մեքենայութիւնները անհանգստացնելու կենդրոնական Հայ իշխանութիւնը եւ տկարացնելու, քանի որ անոր ուժեղացումը կը սպառնար իրենց շահերուն։ Նաեւ ներքին պատճառներն ալ, ինչպէս Բագրատունի տան ճիւղաւորումը եւ աթոռի կռիւը գոյզն անմիաբանութիւն պիտի չյաջողցանէին նախարարական կազմին մէջ։

«Բաժանէ որ տիրես», սկզբունքն անշուշտ նաեւ Բաղդատի կառավարութեան սկզբունքն էր, որ չէր ուզեր բնաւ զօրաւոր Հայաստանի մը գոյութիւնը։ Ուստի այս կամ այն պատճառաւ ծայր տուած էր միանգամ անջատման ոգին, որ օրէ օր աւելի զարգացաւ եւ ճարակ գտաւ։

Տաշիրքն առաջիններէն չէր որ ջեռաւ այս կրակով։ Բայց ի սկզբան բոլորովին մեղմ ընթացքով։ Աշոտ Ողորմած կամ անոր որդին «Տիեզերակալը», Սմբատ ջանացին իրենց սիրած

միջավայրն եւ նախնեաց հանդստատեղին կառուած պահել արքունի տան հետ՝ խաղաղութեամբ բաժին հանելով զայն իրենց հարազատին Գուրգէնի, ինչպէս նման պարագաներու մէջ յառաջ եկած էր Կարսի թագաւորութիւնը՝ իրենց հօր Աշոտի օրով։

Ինչպէս միւս մասնակի թագաւորները, նոյնպէս Տաշիրք-Աղուանք իւր անկախութիւնն ունենալով ալ զօդուած մնաց կեդրոնական իշխանութեան հետ։ Ընդոյ կապուած էին Անիի թագաւորութեան հետ մանաւոր զինակցութեամբ, կ՚ապրէին անոր հետ «ի հնազանդութեան իբրեւ որդի առ հայր»։ Անոնք կեդրոնական իշխանութեան շահին կը ձգտէին եւ վերջինս ալ պատրաստ էր թիկունքէն մանր թագաւորութիւններու օգնութեան հասնելու։ Երբ Զմշկիկ Աշոտի օգնութիւնն ուզեց ընդդէմ Տաճկաց, իրեն շուրջը համախմբուեցան նաեւ «ամենայն թագաւորազունքն Հայոց՝ ազատքն եւ իշխանքն եւ ամենայն մեծամեծքն աշխարհաց անոնց արեւելից»։ Նման դէպքեր պիտի տեսնենք նաեւ պատմութեան ընթացքին։ Բայց թէ այս «խաղոյ թագաւորները» յիրականին ազատակա՞ր եղան Հայաստանի զարգացման եւ ուռճացման, այս մասին նպաստաւոր պատասխան չի տար պատմութիւնը։

Տաշիրք անկախութեան հասաւ Ժ. դարու վերջին քառորդին։ Նոր թագաւորութեան շըրջանը ի սկզբան հաւանօրէն այն էր, ինչ որ Սմբատ Բ. Սանահնի եպիսկոպոսին սահմանեց իբրեւ

կորիկէ (կիւրիկէ) որը Նառէին այժմու ի Լոռէ քաղաքը.։ Տրուած տեղեկութիւններէս ընդհանուր մը կը սահմանագծուի իշխանութեանս շըր-ջանակը այսպէս. արեւելքէն Գանձակ, Կապան, արեւմուտքէն՝ Կղարջք Կողբիս-Ըձարա, հիւսի-սէն՝ Սամշվիլդէ, Կուր գետ, Տփղիս, հարաւէն՝ Շիրակ, Վանանդ, Աշոց եւ Արագածոտն. առ այժմ այսչափ աշխարհագրութեան մասին։

## 1. Գուրգէն Ա. 980—989:

Մատթէոս Ուռհայեցի (էջ 17) պատ-մելէ ետքը Աբէհի՝ Ձմշկիկի զօրավարին արշա-ւանքը Տաճկաց վրայ եւ Ամիդի առջեւ կրած պարտութիւնը եւ անկէ ետքը անոր կայսեր գրած թուղթը, ուր կը խնդրէր որ կայսրն վրի-ժառու ըլլայ թշնամիներէն, եւ ապա կայսեր բրած զօրաժողովը եւ Հայերէն խնդրած օգնու-թիւնը՝ կը յաւելու. "Յայնժամ (այս իբրև 972ին) ամենայն թագաւորազունքն Հայոց, ա-զատքն եւ իշխանքն... ժողով արարին առ թա-գաւորն Հայոց Աշոտ Բագրատունի, թագաւորն Կապանին Փիլիպպէ եւ *Թագաւորն Աղուանից Գուրգէն*, Աբաս կարուց տէրն եւ Սենեքերիմ Վասպուրականի տէրն եւ Գուրգէն Ընձեւացեաց տէրն, եւն։

Հայկական զօրաշարժին մասնակցող "թա-գաւորն Աղուանից Գուրգէն, ասանց տարա-կուսի այն Գուրգէնն էր, Աշոտ Ողորմածի որդին,

որ Վարդանի պատմածին համաձայն (էջ 90) ժառանգած էր "զՏաշիր Սեւորդւոցն Ձորագետովն եւ զկայեն եւ զկայծոն, զխորխոռունիս' որ ի խոռայ շինեցաւ, որ է խոշոռնի եւ խոռակերտ, եւ զԲազունիս, որ է Բազկերտ ի Գաւառն Տաշրայ. եւ այլ բերդք անուանիք եհաս Գուրգենայ, զոր Վիրք Սամխէթ կոչեն»։

Եթէ Առհայեցի իւր այս տողերը գիտակցօրէն գրած է եւ Գուրգէն ստուգիւ մասնակցած է զօրակոչին իբրեւ «Թագաւոր Աղուանից», պիտի հետեւի ինքնին, թէ 1. Տաշիրք = Աղուանից արդէն 972ին հրատարակուած էր անկախ, իւր ուրոյն թագաւորով. եւ թէ 2. Գուրգէն 972էն յառաջ արդէն կարգուած էր տէր եւ «Թագաւոր» Տաշիրքի։

Բայց այս թուականը մեզի շատ կանուխ կը թուի. ոչ միայն վասն զի Մխիթար Այրիվանեցի (էջ 56) Գուրգէնի թագաւոր հռչակուիլն կը նշանակէ 981ին. «Այս եղեւ սկիզբն թագաւորելոյ Բագրատունեաց ի վերայ Վրաց, զի Գուրգէն ի Վիրս (= Տաշիրք) եւ Սմբատ եղբայր նորա ի Հայս թագաւորեցին», այլ եւ կ'անգիտանան իրողութիւնս ժամանակակից յիշատակարանները։

Ջալալեանց՝ Ճանապարհորդութիւն, էջ 42, յառաջ կը բերէ Բարսղի կանոնագրոց վերջը գրուած յիշատակարան մը 972 թուէն, «զոր տեսի ես, կը գրէ, ի Քեթեւիկ անուանեալ մատենին, Սանահնի, ուր պահուած են մեզի համար կարեւոր տողերս.

Սանահնեցի կրօնաւորս Սիմէոն, որ այնպէս ծանօթ է Տաշիրքի մատուռը անցեալին եւ ներկայիս, չի տար որ եւ իցէ անհարկութիւն Տաշիրքի «թագաւորի» մասին, թէեւ կը յիշէ որքայազուն կրկին հարազատները՝ Գագիկը եւ Գուրգէնը։ Ընդհակառակն մեր ուշադրութիւնը կը հրաւիրէ Սմբատի վրայ, որ 972 թուին հօրը՝ Աշոտ Շահնշահի կենդանութեան թագաւորանուն եւ գահակից բարձակից կը ներկայացուի. «Ի թագաւորութեան Աշոտոյ եւ նորին որդւոյ Սմբատայ քաջ(ք) եւ յաղթող(ք) թագաւորաց Հայոց»։ Ուշագրաւ է եւ այն պարագան, որ Սանահնի շինութիւնն կը վերագրուի Աշոտի եւ Սմբատայ, իսկ Գուրգէնի մասին խօսք չ՚ըներ։

Ուրիշ կարեւոր վաւերագիր մ՚ալ պահպանած է մեզի Ջալալեանց (անդ. էջ 43—44)։ Սմբատ թագաւորին հրովարտակին պատճէնը, հանուած «յիշատակած ձեռագիր հրովարտակէն գրեալ ի մագաղաթի»։ Այս հրովարտակը գրուած է 979 թուին. զոր կը համարիմ ես մի եւ նոյն ժամանակ Տաշիրքի անկախ հրատարակութեան հրովարտակը.

«Կամաւն ամենազօրին Աստուծոյ Հօր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյն ես Սմբատ Բագրատունի թագաւոր Հայոց թոռն տիեզերակալ եւ մեծ թագաւորին Սմբատայ որդւոյ թագաւորին Աշոտոյ ողորմածն կոչեցելոյ եկի ի տեսութիւն սուրբ ուխտիս Սանահնիս, զոր շինեալ էր թագաւորն Աշոտ եւ Խոսրովանոյշ թագուհի հայրն

եւ մայրն իմ. եւ անտի զի աստուածաշէն եւ թագաւորաշէն էր. վասն որոյ սիրեցի եւ սիրոյ նշան արարեալ Հաստատեցի զատ աթոռ եպիսկոպոսութեան եւ սահմանեցի զվիճակ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Հայր վանաց զնշանայի ետու. առնել եպիսկոպոս մեծի Հայրապետին Հայոց խաչկայ. եւ անդրանկայի Հրամանաւ մերով ետու զվիճակ եւ երկիրս զայս Սանահնիս, զամենայն երկիրն Տաշրայ զգիւղն եւ զձորքն մինչեւ ի լեառն բազում յայսկոյս եւ յայնկոյս մինչեւ ի սահմանս Գուգարաց աշխարհին, եւ մինչեւ ի սահմանս Ցփխիսայ եւ Վրաց. եւ ի սահմանս Կղեգ գաւառին, եւ մինչեւ ի սահմանս Կայենոյ եւ ի սահմանս Կղագեցոց մինչ ի սահմանս տանն Շիրակայ, եւ Սմբատ թագաւոր իմ թագաւորական իշխանութեամբն եւ կաթուղիկոսաց Հրամանաւքն զաթոռս զայս եւ զվիճակս Հաստատեցի ի Սանահնի սուրբ Աստուածածնիս, որ էր գերեզմանատուն նախնեաց մերոց վասն յիշատակի Հաւր իմոյ եւ մաւր թագաւորին Աշոտոյ, եւ թագաւորհւոյ խոսրովանոյշին. ինձ կենաց եւ յետ մահու ի դուրս սուրբ Աստուածածնիս, որպէս Հայրն իմ եւ մայրն իմ նորոգեալ էին եւ զարդարեալ զարդարանաւք եւ յոլով գեղեցկիւք եւ Հայրենեաւք առաւել եւ ձորով. եւ արդ եթէ ոք իմ Հրամանաց եւ տուեալ սիգէլիս Հակառակի եւ կարէ եւ խափանել ջանայ ի թագաւորաց կամ իշխանաց եւ ի կաթուղիկոսաց զիմ Հաստատեալ վիճակին զՃԺԸ Հայրապետաց նզովեալ եղիցի, գրեցաւ ի թուականին Հայոց ՆԻԸին.

Սմբատ Տաշիրքի հոգեւոր իշխանութեան սահմանները ընդարձակած միջոցին առանց սարսափելի կը գծէր մի եւ նոյն ժամանակ իւր եղբօր Գուրգէնի իշխանութեան սահմանները, եւ այս առթիւ անցք կ'ունենար Տաշիրքի անկախ հրատարակութեան հանդէպ Սանահնի մէջ, ուր գացած էր Հայոց Թագաւորը այս նպատակաւ։

Թագաւորի այս այցելութիւնն ապահովապէս կ'անհնարինէ — Թէեւ երկու տարի յառաջ գնելով, Սանահնի «Քէօթիւկն», ուսկից — ինչպէս կ'ենթադրենք — յառաջ կը բերէ Հ. Ալիշան (Հայապատում, էջ 288) հետեւեալ տողերը եւ Գուրգէնի հրովարտակը.

«Զկնի մահուան Աշոտայ ի թուականին ՆԻԶ (977), Թագաւորէ որդի նորա *Սմբատ*, որում՝ պատահէ երթալ ի տեսութիւն եղբօրն իւրում Հարազատին *Գուրգենայ* որ էր յայնժամ իշխան բնաւ երկրին Տաշրաց. եւ ի բազում ուրախ կեցեալ առ միմեանս հանդերձ ամենայն ազատագունդ հայկազեան զօրօք, յիշեն զհոգեւորացն եւ զմարմնականաց տեղիսն, այսինքն զՍանահնոյ սուրբ Աստուածածնի կաթուղիկէն, որ էր հիմնարկեալ եւ աւարտեալ հօրն եւ մօրն իւրեանց. եւ գրէ կոնդակ եւ արձան յաւիտենական, թագաւորական հրամանաւ օրինակ զայս.

Կամաւն ամենազօրին Աստուծոյ. Ես Գուրգէն Թագաւոր, Շահնշահի որդի Աշոտոյ Ողորմածի, յազգէ Բագրատունի, յիշեալ զմեղս իմ

մանկանց նոր Սիոնին. Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն»։

Ինչպէս վերոյիշեալ ՛ՆԻԶ. թուականին ճշգութեան, նոյնպէս այս թուին Գուրգէնի «թագաւոր» ըլլալուն երաշխաւոր չենք կրնար ըլլալ։ Մեզի կասկածելի կ'երեւայ նաեւ հրովարտակին հարազատութիւնը։

Ինչ ալ ըլլայ՝ ստիպուած ենք հաստատուն կառչիլ — առ ի չգոյէ լաւագոյն կռուանի — Մխիթար Այրիվանեցւոյ տուած թուականին, եւ Գուրգէնի թագաւոր նշանակուելուն ընդունիլ 979/81, լաւ եւս 980 թուին, ի ձեռն իւր եղբօր՝ Սմբատ թագաւորի։

Թէ ինչ շարժառիթով տեղի ունեցաւ Գուրգէնի թագաւոր հռչակուիլը, պատմագիրք որ եւ իցէ ակնարկութիւն չեն ըներ։ Հ. Չամչեան (Բ. 851) կը համարի թէ «Սմբատ իւր կրտսեր եղբօր Գուրգէնի հաւատարմութիւնը վարձատրելու համար տուաւ անոր Լոռիի թագաւորութիւնը»[1]. բայց թէ ինչ հիմամբ այսպիսի մտքի եկած է Հ. Չամչեան, ինծի ծանօթ չէ։

Այսպէս Գուրգէն, Աշոտ Ողորմածի որդին եղաւ Տաշիրքի առաջին անկախ թագաւորը, եւ իրմով սկսաւ Կիւրիկեան ցեղը, որուն եւ առաջին նահապետը նկատուեցաւ։

---

[1] Այսպէս իւրացուցած են ենթադրութիւնս նաեւ Դիւլորիէ եւ այլք. Դիւլորիէ կը գրէ. «Գուրգէն կամ Կիւրիկէ Ա., Աշոտ Ողորմածին երրորդ որդին, իւր եղբօրմէն՝ Սմբատ Բ. թագաւորէն իբր ժառանգութիւն առաւ Հայկական Աղուանքը» (Doc. I, p. 10, ծն. 1)։

Կիւրիկեան Բագրատունի ցեղին անդրանիկ Թագաւորիս կենսագրութեան եւ գործունէութեան վրայ շատ քիչ տեղեկութիւն հասած է մեզի։

Գուրգէն՝ Աշոտ Գ. Բագրատունի թագաւորին կրտսեր որդին էր. մայրը կը կոչուէր Խոսրովանոյշ, որ եղաւ մին հայ մեծագործ եւ շինարար թագուհիներէն։ Կը յիշուին իր եղբայրներէն՝ Սմբատ, որ հօր յաջորդն եղաւ թագաւորական գահին վրայ եւ կոչուեցաւ Տիեզերակալ, եւ Գագիկ, որ Սմբատի մահուընէ վերջը յաջորդեց աթոռին։ Կը յիշուի նաեւ քոյր մը (Ասողիկ, էջ 254)։

Իր օրով աւարտեցաւ Սանահնի Ս. Աստուածածին եւ Հաղբատի Ս. Նշան եկեղեցիներու շինութիւնը, զորոնք ձեռնարկած էր կառուցանել իր մայրն Խոսրովանոյշ թագուհին "ի փրկութիւն Սմբատայ եւ Գուրգենայ,"։

Կիր. Գանձակեցի, էջ 56, շեղելով յայլոց միւս պատմագիրներէն՝ Հաղբատի եւ Սանահնի շինութիւնը կը վերագրէ Գուրգէնի, զոր Գերենիկ կը կոչէ. "Իբրեւ եւս Կիւրիկէ արքայ յազգէն Բագրատունեաց որդի Դաւթի, որդւոյ Դերենկան, որ հիմնարկեաց զնշանաւոր ուխտն զՀաղբատ եւ զՍանահին, եթէ եթող առէր Գրիգորիս զաթոռ իւր եւ գնաց ի Հռոմ" .... Այս մասին Բրոսէ հետեւեալ մեկնութիւնը կ՚առաջարկէ. "Կիրակոսի միւս մատենագիրներու հետ համաձայնցնելու համար կարելի է ենթադրել, որ Գերենիկը կամ Գուր-

գէնը իր վրայ առած էր վանքերու շինութեան գլխաւոր վերահսկողութիւնը եւ հոգը, քանի որ Հաղբատ եւ Սանահին կը գտնուէին այն գաւառը, որ իրեն բաժին ինկած էր, ուստի ինքը յիշեալ վանքերու կառուցանողը չէր։ Կիրակոսի խօսքերու իմաստն հասկնալու է այսպէս համաձայն միւս պատմագիրներու վկայութեան, որոնք նոյն վանքերու շինութիւնը միաբան կը վերագրեն Գուրգէնի կամ Դերենիկի մօրը՝ Խոսրովանոյշ թագուհւոյն, նոյնը կը հաստատէ նաեւ Սմբատ թագաւորի հրովարտակը (տես վերը), որ անոնց շինութիւնը կը վերագրէ Աշոտ Ողորմածի եւ Խոսրովանոյշի։ Բայց ասոր, քանի որ յիշեալ վանքերը կառուցուած են յիշեալ թագուհւոյն որդիներու, այս ինքն Գուրգէնի եւ անոր եղբօր Սմբատի փրկութեան համար, ինչպէս կը վկայէ արձանագրութիւնն նշանաւոր Հաղբատի վանքին — "Թվ. ՆԽ (991) Սիմէոն հայր եւ Տիրանուն երէց շինեցաք զեկեղեցիս Սմբատայ եւ Գուրգենայ փրկութեան, (Կոստանեանց՝ Վիմական տարեգիր, էջ 10) — ուստի շատ աւելի հաւանական է ենթադրել, որ ինքը Խոսրովանոյշ թագուհին կառուցած է վանքերը իր որդիներու փրկութեան եւ արեւշատութեան համար։ Ասոր համար ալ հրամայեց քանդակել միթխարի քարի մը վրայ՝ ագուցած Հաղբատի գլխաւոր տաճարի արեւելեան պատի մէջ, Սմբատի եւ Գուրգէնի պատկերները հին արքայական զգեստաւորմամբ, ձեռքերը բռնած նոյն եկեղեցւոյն կաղապարը (modèle)։

Հայրապետի եկեղեցւոյն վրայ տեսնուած պատկերի գեղեցիկ նկարագրութիւնը տուած է Ռոստամ-Բէկ Երզնկեանց (Արարատ, 1886, էջ 494), զոր կարեւոր կը համարիմ յառաջ բերել հոս. «Ուրախ սրտիւ հայեցայ ի ճակատ արեւելեան որմոյ կաթուղիկէ մեծի տաճարին արտաքուստ քանդակեալ ի վերայ միակտուր խարախիր քարի, ի պատկերս սիրելի թագաւորաց մերոց Սմբատայ եւ Գուրգենայ՝ որդւոցն Աշոտոյ Ողորմածի ի ձեռս կատարելահասակ մարդոյ՝ թագաւորական ձեւ զգեստիւք. ի գլուխ Սմբատայ արքայի եդեալ է սրածայր թագ չորեքփեղկեան եզերքն զարդարեալ ակամբք պատուականօք. իսկ գլուխ Գուրգենայ պատեալ է ապարօշ ազնիւ (շալ) պատուեալ Տիգրանեան չքանչան վարսակալաւ։ Զգեստ թագաւորացս է լայնաձեւ երկայն վերարկու, տարածեալ ի թիկանց մինչեւ ցկոճեղս իւրեանց ըստ արեւելեան տարազոյ։ Թագաւորքն պերճացեալք զինուորական զգեստիւք, արքայական ականակապ թագիւք, փառաւոր այեօք մօրուաց, դէմ առ դէմ կացեալ հանդէպ միմեանց ունին ի ձեռս իւրեանց զձեւ եւ զգաղափար շինուածոյ մեծի տաճարին ի նշանաւորութիւն ամենակարողին Աստուծոյ։ Ցարդ եւս հայեցողն ի քանդակագործութիւնս այն պատկերաց պատկառանօք կրէ ի վեհ Հայկական ծանր Հայեցուածոյ ճարտարագործ պատկերացս երեւի մանկագրութիւն ինչ. բայց անվերծանելի, ըստ որում եղեալ է փակագիր ծածկագրութիւն, զոր ընթեռնուլ չիրաւի շատ ջանա-

ցի, սակայն չեղեւ հնար. որովհետեւ քան մեծի մասին եղծեալ եւ մաշեալ էր։

Նոյնպիսի պատկերներ քանդակուած են նաեւ Սանահնի եկեղեցւոյն արեւելեան ճակատին վրայ[1], գրեթէ մի եւ նոյն կերպարանքով, միայն քիչ մ'աւելի փոքրիկ ձեւով եւ հետեւեալ արձանագրութեամբ. "Կիւրիկէ թագաւոր եւ Սմբատ թագաւոր,,: Սակայն մենք Brosset-ի[2] հետ համամիտ ենք ընդունելու, որ այս տեղ յիշուած թագաւորները չեն Գուրգէն եւ Սմբատ Տիեզերակալ, այլ Դաւիթ Անհողնի որդին՝ Կիւրիկէն, իսկ Սմբատ՝ սորա եղբայրը։ Այսպէս նոյն Սանահնի մէկ արձանագրութեան մէջ կ'ըսուի. "Շ.Ժ.Բ. (1063) թուին Հայոց … ի թագաւորութեան Կիւրիկէի եւ Սմբատայ…. (Ջալալեանց, էջ 32), ուր Կիւրիկէ եւ Սմբատ

[1] Լալայեանց՝ Ազգագր. Հանդ. 1901. էջ 384. "Սանահնի եկեղեցւոյ արտաքին արեւելեան ճակատը զարդարուած է իր գեղեցիկ կիսաբուրգերի վրայ քանդակ կամարներով, որոնցից մէկ անկիւնը աւելի մեծ է եւ պատում է անկիւնի վրայ բազմաւոր բարձրաքանդակ մեծ պատուհանը։ Այս վերեւ քանդակուած են երկու թագաւորական հանդերձով եւ որպիսի գլխարկով մարդ՝ ձեռքերին այս եկեղեցւոյ կաղապարը բռնած. Փոքր ինչ վերեւ արձանագրուած է, Կիւրիկէ եւ Սմբատ թագաւորք,,. Տես նաեւ [illegible], ամբ 1898. էջ 293. եւ Ջալալեան, Ճանապարհորդութիւն, էջ 11.

[2] Brosset. Deux historiens arméniens, Pétersbourg 1870, էջ 51, ծն. 4. „Spécialement l'église de la Vierge, à Sanahin porte au faîte du pignon oriental la figure de deux personnages, que la tradition nomme Coriké et Sembat, soit de deux fils d'Achot-le-Miséricordieux, soit plus probablement de Coriké et son frère (?) de Loré …

դարձեալ միաժամանակ թագաւոր կը ներկայացուին։ Այսպէս անձինքն կը մնայ թէ ինչպէս Սմբատ Տիեզերական Հայոց գերագոյն թագաւորը, իւր կրտսեր եղբօրմէ՝ հպատակ թագաւորէ մը՝ եարը կը գտնուի. դարձեալ Լոռիի իշխանութեան անդրանիկ թագաւորը Գուրգէն եւ ոչ մէկ տեղ Կիւրիկէ անուանուած է. թէեւ Հ. Ալիշան իւր Տեղագրութեան մէջ էջ 63 կ'ըսէ. «Նա զի (Գուրգէն) ի Վրաց Կորիկէ կոչիւր, յայն անուն եւ թագաւորութիւնն կոչեցաւ Կիւրիկեան[1]»։

Ցուցակներուս, Գուրգէնի մէկ ուրիշ յիշատակն ալ անուան է Սանահնի տաճարին մէջ, էջ 14 կը գրէ. «Ի կողմ արեւելից ընդ մէջ Աստուածածնայր եւ Ամենափրկիչ եկեղեցեաց շինեալ կայ սրբատաշ քարամբք ճեմարան կամարակապ, ի ճակատ ճեմարանիս կանգնեալ կան երկու խաչք, յորոց մին շինեալ է ի Սարգիս քահանայէ ի բարեխօսութիւն վասն իւր. եւ երկրորդն ի վերայ Գուրգէնայ Բագրատունւոյ»։

Հաւանօրէն ինքն ալ մասնակցեցաւ այն զօրաշարժին որով Սմբատ Բ. Հայոց թագաւորը

---

[1] Թէ ինչ ըմբռնողութեամբ համեմատութիւն ունին իրարու հետ Գուրգէն եւ Կիւրիկէ ձեւերը. չեմ կրնար ըսել. Գուրգէն կը հայի հին պարսկական Վարազգէն անունէն, որ Վրաց քով շատ մը ձեւեր առած է, ինչպէս Գուարգէն, Գուրգէ, Գուրգի, Գէորգի, Գուրգին, Կիւրային, Կիւրգին եւ վերջապէս Կուրիկէ եւ առանց խորութեան պատմագիրները մի եւ նոյն անձին համար վերցնելով՝ անուան բոլոր ձեւերը կը գործածեն։

օգնութեան փութայ Վրաց Բագարատ թագաւորին եւ Տայոց Դաւիթ կիւրապաղատին ընդդէմ Աբխազաց թագաւորին (988ին), որ իւր հայրը՝ զԳուրգէն պաշտպանելու համար խաղացած էր Վրաց վրայ. "Եւ առնոյն զօրն Վրաց եւ Վասպուրականի. *Սիւնեաց եւ Աղուանից իշխանքն* միահաւաք լինէին ընդդէմ Աբխազաց զօրուն. (Ասողիկ էջ 252).

Երբ 989ին մեռաւ Սմբատ Բ. եւ անոր տեղ յաջորդեց Գագիկ Ա. Շահնշահ (989—1020), թէպէտ կ'երեւայ զԳուրգէն Աղուանից թագաւորը վերստին իւր աթոռին վրայ հաստատեց, այս մասին կը գրէ Մատթէոս Ուռհայեցին (էջ 10). "Յայնմ ժամանակի նստաւ Աշոտ ի Կարս թագաւորական իշխանութեամբ հրամանաւ ազգապետին իւրոյ Գագկայ Հայոց արքային եւ *Գուրգէն՝ յԱղուանից աշխարհին*, վասն զի յազգէ Հայոց թագաւորացն էին եւ կային հնազանդութեամբ առանն Շիրակայ." (Հմմտ. եւ Սմբատ՝ Տարեգրութիւն, էջ 28).

Գուրգէնի մահը հաւանականօրէն պատահած պիտի ըլլայ իւր եղբօրմէն քանի մ'ամիս ետք նոյն տարւոյն մէջ (989ին). Այս կը տեսնուի Ասողկան պատմութեան ընթացքէն. վասն զի վերջինս յիշելէ ետք Սմբատի մահը կ'ըսէ էջ 255. "Եւ իսկ եւ իսկ զկնի Սմբատայ, ի նոյն ամ՝ թագաւորեաց Գագիկ եղբայր նորա ի ՆԼԸ (989) թուականին, յաւուրս ձմերայնոյ, ի քաղաքին Անւոյ." Գագիկի թագաւորութեան սկզբնական գործունէութիւնը յիշելէ անմիջա-

դէս վերջ, Հրապարակ կ՚իջնայ Գուրգէնի որդին Դաւիթ Անհողին, եւ անկէ կը հետեւի որ Դաւիթի գահակալութիւնը եւ Գուրգէնի մահը գրեթէ մի եւ նոյն ժամանակ պատահած են։ Մարմինը փոխադրուեցաւ Սանահնի Ս. Աստուածածին եկեղեցւոյն արքայական գամբանարանը։ Շիրիմը կանգուն կեցած է դեռ այսօր, Յարութիւնեան կը նկարագրէ զայն, Ազգագրական Հանդ. 1898, էջ 294. «Ս. Աստուածածին եկեղեցու արեւելեան պատի տակ, արտաքուստ, գտնւում է միապաղաղ, եռանկիւնաձեւ քարից շինուած մի գերեզմանաքար որի գեղեցկութիւնը, ձեւը եւ վրան կատուցուած կամարաձեւ խորանների հետքերը գուշակել են տալիս, որ նշանաւոր մարդու աճիւն պէտք է լինի այդտեղ ամփոփուած։ Մտնելով գերեզմանաքարին եւ շուրջը բուսած խոտերն այս ու այն կողմը ցրուելով՝ կը կարդաք քարի երեսի մի անկիւնում հետեւեալ պարզ եւ անպաճոյճ տողերը. *«Այս է հանգիստ Գուրգէնայ որդւոյ Աշոտոյ Ողորմածին»*։ Հմմտ. եւ Ջալալեանց, էջ 10. Brosset, իւր Description des monastères arméniens d'Haghbat et de Sanahin գրքին մէջ, էջ 14 թարգմանին տարբեր կերպով կը կարդայ *«Այս է հանգիստ Գուրգենայ Բագրատունւոյ Շահնշահի որդի Աշոտոյ ողորմածի»*։

Գուրգէն՝ ըստ Ասողկան, էջ 256, ունեցաւ երկու որդի, Դաւիթ եւ Սմբատ. «Իսկ եղբօրորդին նորա՝ Սմբատայ եւ Գագկայ՝ *Դաւիթ*

որդի Գուրգենայ հանդերձ եղբարբն իւրով Սմբատաւ առին զկողմանս Տաշրայ եւ զՎրաց դաշտին.»

Վարդան (էջ 91) երրորդ որդի մ'ալ կը յիշէ Բագարատ անուամբ, որ Ափխազաց թագաւոր կը խնդրուի. «Եւ ի նմանէ (այսինքն ի Վախտանգայ) ծնեալ թագաւորք մինչեւ ցՓանուսա, որ (այլ. զոր) կոտորեցին զԱրաբս (այլ. Արաբս). յետ որոյ թագաւորեաց Բագարատ որդի Գուրգենայ, որդւոյ Աշոտոյ Ողորմածին. ի վերայ Ափխազաց. այս բառ Աբխազաց երկրին ասիցն.»

Դարձեալ քիչ մը վարը պատմելէ ետք Դագիկ թագաւորի որդւոց՝ Յովհաննէսի Աբասայ եւ Աշոտի իրարու հետ ունեցած վէճը իրենց հօր թագաւորութեան բաժանման առթիւ, կ'ըսէ (էջ 92). «Եւ ի վիճել նոցա զկնի այնորիկ, գայ թագաւորն Ափխազաց Գորգի, որդի Բագարատայ, որդւոյ Գուրգենայ, որդւոյ Աշոտոյ Ողորմածին, եւ առնէ իրաւունս ի մէջ նոցա եւ գնայ»։ Այս դէպքը կը յիշատակէ նաեւ Ջուանշէր[1] առանց սակայն յիշելու Գուրգէնի հօր անունը. «Եւ Դաւիթ կիւրապաղատն՝ թագաւոր Տայոց՝ առնուցանէր զմանուկն Բագարատ զորդին Գուրգենայ, եւ խնդրեցին զնա թագաւոր Ափխազեթոյ»։ Վարդանի եւ Ջուանշէրի այս տեղեկութիւնը կարծել կու տան, թէ Ափխազաց գահին համար խնդրուած թեկ-

1 Ջուանշէրի Համառօտ Պատմութիւն Վրաց. Վենետիկ 1884. էջ 109.

նաձուն էր Բագարատ, Տաշիրքի Գուրգէն թագաւորի որդին։ Վարդան իր խօսքին մէջ կը կոչէ զՄխիթար Անեցի, որուն պատմութեան այս մասը գժբախտաբար չէ հասած մեզի, որ կրնար լոյս տալ խնդրոյս։ Ասողիկ այս կէտի մէջ կը խօսի վերոյիշեալ պատմագիրներէն, երբ պատմելով նոյն դէպքը կը գրէ (էջ 251)․ «Եւ կիւրապաղատն Տայոց Դաւիթ եւ Սմբատ արքայ Հայոց՝ թագաւորեցուցին Աղուանից *զՍմբատ որդի Գուրգենայ, թոռն Բագարատայ թագաւորին Վրաց*։ Եւ մեռեալ հանելոյ նորա՝ հան նորա Բագարատ այլ կին առնել՝ (այլ․ որ) հալածէր *զԳուրգէն որդի Բագարատայ* ի հայրենեացն։» Այսպէս Ասողիկ Աղուանից նորնշանի թագաւորը կ՚անուանէ Սմբատ, որ Վրաց Բագարատ թագաւորի որդւոյն Գուրգէնի որդին էր։ Մխիթար Անեցի եւ Ասողիկ միաբանելու համար պէտք է ընդունիլ թէ Աղուանից նորնշանի թագաւորն Սմբատ որդի Գուրգենայ կը կոչուէր նաեւ Բագարատ, ինչպէս Ասողիկ, էջ 276 յայտնապէս կ՚ընդունի («Բագարատ թագաւորն Աղուանից եւ հայրն նորա Գուրգէն թագաւոր Վրաց»)։ այս Սմբատ-Բագարատ կարգուեցաւ թագաւոր Աղուանից՝ ի կենդանութեան իր պապին Վրաց Բագարատ թագաւորին։ Հաւանօրէն Վարդանի ուշադրութիւնն է «որդւոյ Աշոտոյ Սմբատայ» յաւելուածը, որ բնաւ պատմական չ՚երեւար. Հմմտ. եւ Մարկուարտ՝ «Հայ Բագրատունեաց ծիւղագրութիւնը», Վիեննա 1915, էջ 150։

Արիստակէս Լաստիվերտացի[1] կը յիշէ Գուրգէնի մէկ դուստրն առանց անուան, որ հարսնացաւ Դուինի ամիրային՝ Ապուսուա-րին հետ։

Brosset[2] դրամ մը կը վերագրէ Գուրգէն թագաւորին, որուն կը հետեւի Լալայեանց[3] ալ այսպիսի ընթերցուածով՝

(Ա. կ.) Ցն. քն.
(Բ. կ.) Տր օգնէ Կորիկէի կորա. ա...

Langlois[4] կը հակառակի Brosset-ի՝ այնու որ դրամս Կիւրիկէ Դ.-ի վերագրել կ'ուզէ եւ ընթերցուածն ալ տարբեր կերպով կը կարդայ։ Դրամիս պիտի անդրադառնանք այս առանձին գլխով։

## 2. Դաւիթ Անհողին 989—1048՝ եւ Սմբատ 1089։

Գուրգէնի կը յաջորդեն գահին վրայ Դաւիթ Անհողին եւ Սմբատ, թէեւ բացայայտ կը գրէ Ասողիկ (էջ 256)․ «Իսկ եղբօրորդին նոցա՝ Սմբատայ եւ Գագկայ՝ Դաւիթ որդի

[1] Պատմութիւն Արիստակիսի վարդապետի Լաստի-վերացւոյ Վենետիկ 1901. գլ. Ժ. էջ 52.

[2] Brosset, Monographie des monnaies arméniennes, Pétersbourg 1839. էջ 23։

[3] Լալայեանց՝ Ազգագր. Հանդ. 1901. էջ 312.

[4] Langlois, Numismatique de l'Arménie, Paris 1859. էջ 26։

Գուրգէնայ հանդերձ եղբարբն իւրով Սմբատաւ առնու զկողմանս Տաշրաց եւ Վրաց դաշտին»։

Գահակալութեան տարին պէտք է առնել 989. այսինքն Գուրգէնի մահուան տարին։ Թէ Սմբատ ինչ մասնակցութիւն ունէր թագին կամ թագաւորական գործերուն, Ասողիկի կարճ խօսքը չի բացատրեր. ունկից կրնայ եւ այն իմացուիլ թէ Սմբատ օգնական եղած է եղբօր պետական վարչութեան մէջ, թերեւս առաւել ստորադասեալ քան թագաւորից։

Դաւիթ Կիւրոպաղատին ցեղին ամենէն կարկառուն դէմքն է, եւ իր դարուն ամենաքաջ թագաւորը՝ հայկական սահմաններու վրայ։ Ասողիկ մեծ գովութեամբ կը խօսի իր վրայ (էջ 256). «Ի պատանեկութեան տիս պատանի եղեալ շքեղաշուք հասակաւ եւ վայելչութեամբ՝ իմաստնանայր հանճարով, հաճոյ լեալ Աստուծոյ եւ մարդկան, արիացեալ քաջութեամբ, քաջազօր զօրութեամբ յաղթող լեալ ամենայն հակառակորդաց իւրոց»։

Դաւիթ իրեն «արքունական նիստ» կ'ընտրէ Շամշուլդէ մեծ քաղաքանիստ դղեակը, ուր իրեն կռուան առնելով արշաւանքներ կը սփռէ շրջակայ սահմանները. «Արքայ ասպետ տիրէ քաղաքին Դմանեաց, հնազանդեցուցանէ եւ զամիրայն Տփղեաց քաղաքաւն իւրով» (Ա. 256)։ Միւս կողմանէ ամրացուց երկիրն զօրաւոր բերդերով. շինեց Դեբեդա գետին հովտին մէջ լեռնաձեւ տարածուած հողամասին վրայ Լոռի

բերդապարապաղպը «եւ այլ եւս երկոտասան բերդ». (Վարդ., էջ 106)։

Դաւթի պատրաստութիւններն եւ նուաճումները հաշտ աչքով պիտի չնկատուէին դրացիներէն։ Եւ յիրաւի Դանձակի փայլտուն ամիրան «փութացաւ պատերազմել ընդ նմա՝ զի մի զօրանալով նկուն արասցէ զնա». (Ա. 257)։ Բայց Դաւիթ քաջապինդ օրօք ընդ առաջ ելաւ թշնամւոյն եւ «պատերազմաւ պարտեաց զնա, սրախողխող եւ գետավէժ արարեալ զզօրս նորա»։ Փայլտուն հազիւ կրցաւ մազապուր փախուստով զերծանիլ։

Այս յաղթութիւնները բարձրացուցին Դաւթի անունը։ Նորին միջոցին է որ կախէթի թագաւորին՝ Կիւրիկէ Գ.ի (1010—1029) հետ փեսայացաւ Դաւիթ առնլով անոր Զորակերցել դուստրը կնութեան. թէ այս խնամութիւնը կախէթի թագաւորին հետ եւ թէ Դաւթի աշխարհակալութեան ձգտումները երկիւղ պատճառեցին Գեւմորի՝ Լոռիի սահմանին վրայ գտնուող Գագ բերդի մարզպանին, որ հայ էր ազգաւ. սա «կապակծեալ ի նմանէ (ի Դաւթէ) թողու զհաւատս հայրենի հայութեան եւ թիկունս օգնականի զՎիրս արարեալ ի նոցին կրկնամբ լուանայ ջուր, եւ զորդին իւր՝ մամփուղ[1] Տաշրայ կացուցանէր ի Հինէ վանս.»

[1] Մամփուզ բառս, որ Բրոսէի օրինակին մէջ մ.մ. փոլ գրուած է (տես Մ. Հ.-ին 185)։ Բրոսէին կարծեաց համաձայն միջին (ազգայ) վրացերէն բառին նուազական է» Brosset. Hist. de la Géorgie, էջ 148։

Դեմմարի այս վստահութիւնն անպատիժ չի թո-ղուր "գեղեցկածաղիկ մանուկն եւ նորատի ար-քայն, Դաւիթ, որ "հանճարով, կամ խորա-մանկութեամբ դուրս կը հանէ զԴեմմար Դագ-րերցէն, եւ կը գրաւէ անոր բոլոր ամրոցներն եւ "զբոլոր հայրենիքն, եւ զինքը կը հալածէ երկրէն (Ա. 257)։

Այս ամէն յաջողութիւններն պիտի գի-նովցնէին անշուշտ "չքնաղաշուք գեղաւոր ար-քայն, Դաւիթ։ Արդեամբք ալ նա յեցած իւր ոյժին վրայ փորձեց "սակաւ ինչ ամբառնալ անհնազանդութեան մասամբ առ Հօրեղբայր իւր Գագիկ, (Ա., էջ 279)։ Թէ յորմէ կը կայա-նայ այս "անհնազանդութիւնն, Անիի իշխանու-թեան դէմ, պատմագիրը կը լռէ գմբախտաբար։ Ընդվզում մը սակայն կը շարժէ Գագկայ ցասումը, որ 1001 (ՆԾ) թուին ձմեռ բանակը կը շարժէ դէպի Տաշիրք եւ երեք ամիս Շամշուլդէի եւ "Վրաց դաշտի, վրայէն շրջան ընելով քանդեց աւերեց ամէն բան եւ Դագրերցէն անցնելով (գարնան սկիզբը) հասաւ Աղստեւ գաւառը։ "Դաւիթ թէեւ միանգամ եւ երկիցս պատե-րազմիլ կամեցաւ,, սակայն չհամարձակեցաւ զօր-քին սակաւութեան պատճառաւ բախել Դագկայ բազմութիւ բանակին հետ։ ի վերջոյ միջնորդու-թեամբ Սարգիս կաթողիկոսին տեղի տուաւ եւ "եկն ի հնազանդութիւն Դագկայ արքային,,։ Հանդիպումն տեղի ունեցաւ "յաւանն Շիրա-կայ,,։ Կաթողիկոսն ինքնին յորինեց հաշտութեան պայմանաձեւը։ Դաւիթ կ՚ընդունէր կենդրոնա-

կան իշխանութեան ձախութիւնը եւ կը հաստատակէր անոր «Իբրեւ որդի առ հայր». փոխարէն յանձն կ'առնուր Գագիկ «Հայրենի խնամով սիրել զԴաւիթ», այսինքն պաշտպանել՝ երբ հարկը պահանջէր (Ա. 280)։ Գագկայ յանձնառութիւնն մատնեց իւր որդին՝ Յովհաննէս Սմբատ փոխանակեցաւ Գագիկ (1020), թագաւորութիւնն բաժնուեցաւ երկու որդւոց միջ. թագին հետ մատնեց Յովհաննէս «զԱնի եւ զՇիրակ, զՍ. Գրիգոր ձորոյն Աշոցայ, զԱնբերդ եւ զդաշտն այրարատեան, զԿայեան եւ զԿայծոն եւ զՑաւուշ գաւառն Սեւորդեաց». (Վրդն. 92)։ Իսկ Աշոտ եւ Արաս տիրացան Դրուց աշխարհին (Դուին) եւ կարսին։

Այս միջոցին կ'իյնայ Ապուսուարի, Աղուանից աշխարհին արեւելեան մէկ մասին վրայ իշխող ամիրային ապստամբութիւնը Դաւթի առհմաններէն ներս։ Անիկա ծածուկ դաշինք կնքելով Տուղրիլի հետ, հաւաքեց 150.000ի բանակ մը եւ յարձակեցաւ Դաւթի վրայ (1041*)։ Դաւիթ իւր բանակին սակաւութեան պատճառաւ խոյս կու տար միշտ թշնամիէն երկրին ամրագոյն տեղերը, որով թշնամին «էառ զբազում գաւառս եւ թեմարերդս շուրջ հարիւր, եւ տարի մի կացեալ՝ արար յիւր հնազանդութիւն զմեծ մասն աշխարհին». (Ուռհայեցի. էջ 79)։ Երբ կը պատրաստուէր Ապուսուար խաղալ ուղղակի Դաւթի վրայ, սա անձըրկած՝ ապաւինեցաւ դիմել Անիի թագաւորին՝ Յովհաննէս, պատանեկան պատգամներով օգնու-

թիւն խնդրելով, «էառ», Աստուած, կ՚ըսէր, զամենայն գաւառս Հայոց աշխարհիս՝ եւ զայ ի վերայ իմ եւ եթէ ինչ ոչ օգնես ինձ, եւ ես երթամ իւր ի հնազանդութիւն, եւ լինիմ իւր առաջնորդ եւ խաւար անեմ զաւառիդ Շիրակայ.» Դշնդիփ ազատանայիքներ զրկեց նաեւ Աբխազաց եւ Կապանի թագաւորներուն. Հայոց թագաւորն առաջեց շուտով Դաւիթ 2000 զինուոր, Աբխազաց թագաւորը 4000 եւ Կապանին 2000. Այս երեքին վրայ աւելցնելով Դաւիթ 10,000 մը իւր հպատակներէն՝ ունեցաւ 18.000ի բանակ մը. Տէր էր սակայն տակաւին իւր որդը. Խորամանկին Դաւիթ խորհեցաւ առ այս խաչակրութիւն մը քարոզել լրացնելու պակասն ժողովրդեան համագործակցութեամբ եւ ոգեւորութեամբ. Այս նպատակաւ պատգամ զրկեց Աղուանից Յովսէփ կաթողիկոսին, այսպիսի խօսքերով. «Այս ազգս անօրինաց փառն քրիստոնէական հաւատոյն գան ի վերայ մեր, եւ կամին զօրէնս խաչապաշտայն խափանել եւ զհաւատս հաւատացելոցն Քրիստոսի ջնջել, եւ ահա արժան է եւ իրաւունս ամենայն հաւատացելոց ընդդէմ սոցա երթալ եւ մեռանել ի վերայ քրիստոնէական հաւատոյն. Եւ արդ ժողովեա զամենայն եպիսկոպոսունս Հայոց աշխարհիդ որ յԱղուանս են, եւ ի բանակ այսր հասիր. զի ընդ մեզ մեռանիցիք.» Դշնդիփ հրամանները արձակուեցան նաեւ վանքերը. Յովսէփ կաթողիկոս 200 եպիսկոպոսի գլուխն անցած եկաւ բանակ. հասան հոն նաեւ քահանա-

յից, սարկաւագաց խումբերը: Նաեւ ժողովուրդը ի կոյս կը հրաւիրուէր. «քարոզ կարդաց ընդ ամենայն գաւառն եւ ասէր. Եթէ այր իցէ եւ եթէ կին, որ յանկացող է մարտիրոսական մահուն, աՀա հասեալ եղեւ յայսմ ամի ի վերայ մեր, ում պիտոյ է Քրիստոս, վաղվաղակի առ մեզ հասցէ»: Երամ երամ գրոհ տուեալ ժողովուրդն դէպի բանակ. «Եւ լցաւ դաշտն առ հասարակ անթիւ բազմութեամբ իբրեւ պհոստ հանդերձ պատրաստ»: Այսուստեւ թէեւ խմացաւ հայկական բանակի այս խանդավառութիւնը, բայց արհամարհեց:

Դրոհին ոգեւորութիւնն եւս աւելի բորբոքեց. հազար հրամայեց Անհողին եկեղեցական դասուն, զէնքի փոխարէն՝ խաչ եւ Աւետարան առնուլ:

Հայ բանակն շարժեցաւ. երբ մերձեցաւ թշնամւոյն՝ Դաւիթ 20.000 հոգւ փառաւոր զինուորներով յարձակեցաւ թշնամւոյն վրայ. Մինչ եկեղեցական դասն «Արի Տէր օգնեա մեզ» կ'աղաղակէր, Անհողին իրեններով մտաւ թշնամեաց ճակատը, զարկաւ փշրեց կեդրոնական ղիմը, եւ ձիացեալներն անդր քան զսահման գիմեցին ի փախուստ. Հայ զօրքը հալածեց փախըստական թշնամին եւ այնպէս հնձեց որ «աՀագին կոտորածով վարեցին այլազգեաց զօրքը. հայկական հողաբաժնէն: «Եւ յառուր երիս ափրանայր Դաւիթ ամենայն գաւառացն զոր էառ այլազգին»: Նիզակակից զինուորներն եւ եկեղեցական դասն մեծապարգեւ մեծարուեցան

ւարէն եւ արձակուեցան։ Այսպէս Ուռհայեցի, եր 79—82 (Համմ. եւ Սմբ. 54)։

1039ին մեռաւ Հայոց թագաւորը Յովհաննէս, ինչպէս նաեւ անոր եղբայրը Աշոտ, եւ երկիրն երկու տարի առանց թագաւորի մնաց։ Դաւիթ Անհողին իր առաջին յաջողութիւններով հպարտացած՝ յանդգնեցաւ ինք զինքն ամբողջ Հայաստանի թագաւոր հրատարակել եւ քանաց տիրանալ անոր հակառակ Գագիկի։ Երկու անգամ մտաւ անիէն Շիրակ, Հակառակորդները սրէ անցուց, բայց երկու անգամն ալ նախարարները միացեալ ուժով ստիպեցին զանի վերադառնալ իր թագաւորութիւնը՝ Տաշիրք։ Ահա Ուռհայեցւոյ խօսքերը. «Յայնժամ (1042) ամի բազում անցուած եղեւ տանս Հայոց ի ձեռն Դաւթի Անհողինի՝ ապստամբին Յովհաննիսի Հայոց արքային։ Նա յարուցեալ ի վերայ թագաւորութեանն Հայոց եւ մատնեաց ի սուր եւ ի գերութիւն զգաւառս բազումս եւ գայր անցանէր զօրօք բազմօք յաշխարհն Հայոց. թողեալ զաշխարհն Աղուանից եւ գայր ի վերայ աշխարհին Հայոց. բազում նեղութեամբ եւ անթիւ կրակով այրեցան ի զօրաց նորա. եւ դարձաւ ի յԱղուանից յաշխարհն ի տուն իւր». (Ուռհ., եր 84)։

Սակայն երբ Գագիկ Բ. դաւաճանութեամբ Կ. Պոլիս հրաւիրուեցաւ եւ անոր առաջարկեցին Յովհաննէս թագաւորի կտակին համաձայն Անին Յոյներուն յանձնել, Հայոց նախարարները երկու կուսակցութեան բաժնուեցան. մին կը

բաղձար Հայոց մայրաքաղաքը Յոյներուն տալ. միւսը կը ցանկար զԴաւիթ Անհողին հրաւիրել երկրին տիրելու։ Լաստիվերտացին (էջ 52) կը գրէ. «Իսկ քաղաքացի գլխաւորքն որ նստէին յԱնի, իբրեւ տեսին թէ արգելաւ Դաւիթ ի Յոյնս խորհեցան երբեմն ի Դաւիթ տալ զքաղաքն ի Դանայցին, քանզի քոյրն Դաւթի կին էր նորա. երբեմն ի Բագարատ թագաւորն Աբխազաց.» Պատմութենէ գիտենք թէ առաջին կուսակցութիւնը յաղթող հանդիսացաւ։ Բայց Դաւիթ ջանաց ամէն միջոցներով յինքն կապել երկիրը. Ուռհ. կը գրէ դառնութեամբ. «Յայնժամ դաւաճանութեամբ եւ կեղծաւորութեամբ առա քրիստոնէից Դաւթի Անհողինին, զոր հարկ եղեւ մեզ զանուն նորա փոխել եւ ասել թէ Դավիթ, վասն զի ի վիհն տառապանաց էած զազգս քրիստոնէից. եւ ի վիհն կորստեան յաւիտենից անդնդանայն մատնեալ լինէր» (Ուռհ., էջ 88).

Սաստուրապէտ 1048ին կը մեռնի Դաւիթ Անհողին եւ կը թաղուի Սանահնի վանքին մէջ (Վարդան, էջ 106). «Գուրգէն թագաւորի դամբարանի մօտն է եղել նաեւ նրա որդի Դաւիթ Անհողին Աղուանից թագաւորի գերեզմանը, բայց այժմ՝ առանձնապէս չկայ, երեւի փոխադրել ու ուրիշ բանի համար են գործածել…։ Այդ երկու արքաների դամբարանների վրայ եղել են երկու կամարաձեւ ծածկուած խորաններ, բայց տարաբաղդաբար 1836թ. Յովհաննէս եպիսկ. Տէր-Բարսեղեանը քանդել է տուել այդ գարուար չենքը եւ քարերը գործ

գրել եկեղեցու աւերուած մասերի վերանորոգ-
ման վրայ...։ Այդպիսով այդ գամբարանները
զերծելով իրենց պաշտպանող կամարներից՝
հաստատուել են գետնին, մէկի հետքն էլ
չկայ, իսկ միւսն էլ ծածկուած է արշինաչափ
խոտերով ու եղինձներով՝ որոնք կարծես թէ
մեր այժմեան սերնդի անփութութիւնն ու ան-
հոգութիւնը նախատելու եւ մեր նախնեաց
սուրբ աճիւնների կողմից բողոքելու համար, ծա-
ղկում՝ են մօտեցողների ձեռքերն ու մար-
մինը...» (Արգ. Հանդ. 1898, էջ 294, Յարու-
թիւնեան)։

Դաւիթ Անհողին մեր առջեւ կը ներկայա-
նայ ռազմիկ քաջ աշխարհակալ մը, որ իր
բոլոր կեանքը պատերազմներու կռիւներու մէջ
անցուց. միանգամայն չափազանց փառասէր որով
ազգին թշուառութեան եւ անթիւ արիւնա-
հեղութեանց պատճառ դարձաւ. այս պատ-
ճառաւ են Ուռհայեցւոյն վերոյիշեալ ատելու-
թեամբ լի խօսքերը։ Իսկութեամբ ըսելով
արիասիրտ եւ պատերազմասէր ուզեց նախ իր
տէրութեան սահմանները ամփոփել. ասոր հա-
մար շինեց 12 բերդեր որոնց մէջէն յանուանէ
կը յիշատակուի Լօռի անառիկ եւ նշանաւոր
ամրոցը, որուն աւերակները դեռ կանգուն են։

Հետեւեալ արձանագրութեանց մէջ կը
յիշուի Դաւիթ Անհողին.

(Կառ., Միխայէան Տարեգիրք, էջ 11)

*ՆԽԵ (996) ՙԻ ժամանակս իշխանական ար-
քային Դաւթի Անհողինի, Գուրգէնայ որդ-*

նոյ Բագրատունւոյ թագաւորին եւ Տփղ-իսան, որդի Աբասայ արքայի, եւ անու-անին իմ Ռուսուդան...»

(Ընդ. էջ 12) ՆԾԴ (1005) «Ի Հայ-րութեան Սիմէոնի եւ Աթանագինէ եւ Փիլարտոն կանգնեցաք զսուրբ խաչս ի փըր-կութիւն հոգւոց մերոց եւ ամենայն երկըր-պագուաց իւրոց եւ յաւգնականութիւն թագաւորին մերոյ Դաւթի»:

(Ընդ. էջ 12) ՆԾԵ (1006) «Ի թա-գաւորութեան Դաւթի իշխանկալի եւ ի հայրութեան Յովսեփայ եւ Մեսրոպ կանգ-նեցի սուրբ նշանս յիշատակ Հաղբատայ»:

Վերն յիշեցինք Դաւիթ Անհողինի եղբայրը՝ Սմբատ որ իրեն հետ կը թագաւորէր Լոռիի մէջ. պատմական աղբիւրները կը լռեն այնու-հետեւ անոր կենաց եւ գործունէութեան վրայ. միայն անունը կը յիշուի երկու անգամ՝ 1063ին եւ 1083ին արձանագրութեանց մէջ Կիւրիկէ Ա.-ին հետ, զոր պիտի տեսնենք յառաջ. ինչպէս նաեւ Սանահնու եկեղեցւոյն արեւելեան ճա-կատին վրայ քանդակուած է իր կենդանա-գիրը հետեւեալ արձանագրութեամբ.՝ Կիւրիկէ թագաւոր եւ Սմբատ թագաւոր. զոր վերը տեսանք։

Դաւիթ Անհողինի որդիներէն կը յիշուին Կիւրիկէ Ա. եւ Գագիկ ու դուստր մը Հրանուշ անուամբ որ իւր զինքը թագուհի կը կոչէ հե-տեւեալ արձանագրութեան մէջ (Կատ., էջ 24). «Ի ՈԺԲ (1063) թուին ի հայրապետու-

թեան տէր Դէմետրոսի, ի թագաւորութեան Կիւրիկէի եւ Սմբատայ եւ Հրանուշ թագուհի, դուստր Դաւթի արքայի, շինեցի զնշխարատունս եւ զեկեղեցիս, եւ ետու զնորաշէնքն ի Սանահին....» (Brosset, Hist. de la Géorgie, Addition IX, էջ 161) Բագրատունեաց ազգաբանութեան մէջ Դաւիթ Անհողինի որդիները թուելով կ'ըսէ. «Կիւրիկէ Ա. եւ Սմբատ իրարու եղբայր էին, որոնց եղբայր մ'ալ ունէին Ադարնասէ[1] անուամբ, որ 1064ին դեռ կենդանի էր.» Brossetի աղբիւրը մեզի անծանօթ է Ադարնասէի մասին. գալով Սմբատի որ Կիւրիկէի եղբայր կը նկատէ, սխալմունք կը համարինք, վասն զի Ասողիկ յայտնապէս կը կոչէ զայն եղբայր Դաւթի Անհողնի (Ա., էջ 256).

## 3. Կիւրիկէ Ա. 1048—1089՝ եւ Գագիկ 1039—1058։

Դաւիթ Անհողինին կը յաջորդեն իր որդիները Կիւրիկէ Ա. եւ Գագիկ. Առաջինն արդէն հօր կենդանութեան Լոռիի մէջ կ'իշխէր (տես Չամչ. Բ. 913) եւ Դաւթի մահնելէն ետք Կիւրիկեան մայրաքաղաքը Շամշուլդէէն փոխադրեց իր սիրելի քաղաքը Լոռի. Կիւրիկէ Ա.

[1] Հայ պատմագիրները որչափ որ գիտենք Ադարնասէ անուամբ Դաւթի որդի մը չեն ճանչնար. Հ. Չամչեան եւ Հ. Ալիշան ալ ոչ մէկ ակնարկութիւն կ'ընեն.

գահ կը բարձրանար այն ատեն երբ Անիի Բագրատունի թագաւորութիւնը կը բարձուէր. «Այլ մերն դադարեաց գաւազան թագաւորական որպէս Կիւրիկէին որ ի Լոռէ քաղաք եւ որ շուրջ զնովաւ, զի եւ սա յազգէ Բագրատունեաց էր» (Սմբ. 53)։ Նոյնը կը կրկնէ Սամ. Անեցի ալ (էջ 109). «Զի թէպէտ եւ գոյր ուրուք գաւազան տէրութեան՝ որպէս եւ Կիւրիկէին՝ կամ այլ ուրուք»։ Թագաւորիս ժամանակ Փայտուն Պարսից ամիրան Հեռաշհաւէ կը զօրանար եւ կը տիրէր շրջակայ երկիրներուն այսպէս Հայաստանեաց *Խաչենը*, *Գողթնը*, *Սիւնիքը* եւ վերջապէս «զոր գնէ ընդ Դաւթայ թագաւորին Զորագեաց եւ ընդ Կիւրիկէ թագաւորին Աղուանից ... եւ նեղէր զնոսա։ Տիրեաց նա եւ Դունայ, եւ եղ Հարկս ի վերայ Հայոց երկրՀարիւր Հազար դրամ». (Վարդ. 100)։

Փայտունին յաջորդեց Ալփասլան որ 1064ին առնելով բոլոր ցեղերէն զօրաժողով ըրած քաղեց Հայաստան 100,000 բանակով մը Փայտունի պարտութեանց վրէժը լուծելու։ Առաւ Նոր-քաղաքը «զոր Վիրք Ախալ-քաղաք ասեն», նուաճեց Շամշուլդէ բերդաքաղաքը (Վրդ. 101) եւ Աղուանից երկրին մէջ անՀամար անօրէնութիւններ գործեց. «Մատնեաց զնոսա ի սուրս եւ ի գերութիւնս, եւ անթիւ եւ անՀամար արար զանցուածս քրիստոնէից. (Ուռհ. 145)։ «Եւ զկնի այսչափ բարկութեանս, կը գրէ Ուռհ., առաքեաց սուլտանն առ թագաւորն

Աշոտանից ի Կիւրիկէ եւ խնդրեաց զզաւառն իւր ի հնութիւն, որ յառաջս աՀին առեալ եղեւ. եւ արար սուլտանն ընդ նմա սէր եւ խաղաղութիւն յաւիտեան եւ զթագաւորն Աղուանից զԿիւրիկէ զորդի Դաւթի Անհողինի յայտարարեաց մեծապատիւ պատուով ի քաղաքն իւր Լոռէ բազում ընծայիւք. (Ուռհ., անդ)։

Կիւրիկեան ցեղի այս խնամութիւնն Ալփասլանի հետ բոլորովին տարբեր ձեւով կը պատմէ Ջուանշէր, որմէ կ'երեւայ թէ ազգական էն նաեւ Սամ. Անեցի եւ Վարդան։ Ջուանշէր կը գրէ (էջ 113). "Ալփասլան... գայր աստիր զամենայն աւանս Քարթլայ, կոտորէր եւ գերէր. եւ խաղացեալ գնայր ի մայրաքաղաքն Հայոց ի յԱնի, եւ առնոյր զնա. եւ ընդ աւերմանս կոտորելոցն։ Եւ յետ եւս ապստամբայր Վրաց աշխարհին, եթէ ոչ տայր նմա Բագարատ զզաւառ քեռ իւրոյ ի կնութիւն, որ էր նա դուստր եղբօր Կիւրիկէի Հայոց արքայի. յորմէ խնդրէր Բագարատ աղաչանօք, եւ ոչ տայր զնա Կիւրիկէ. մինչ զորնեցին նմա որոգայթ Վարազկուր եւ Գամրեկէլ զօրավարքն Վրաց, եւ ըմբռնեցին զնա յանտառին Քուխեչոյ, եւ ածին Բագարատայ. եւ գնաց առ նա եւ էառ զդուստր եւ զՇամշուլդէ ի ձեռաց նորա, եւ ապա արձակեաց։„ Այսպէս նաեւ Սամ. Անեցի (էջ 112) "Էառ (Ալփասլան) եւ զԱխալքալաք եւ ի սոյն ամի (ՇԺԴ-ին = 1065) Բագարատ զԿիւրիկէ կալաւ՝ եւ զՇամշուլդէ էառ„. իսկ Վարդան աւելի որոշ ձեւով կը գրէ (էջ 101).

«առ զՆոր քաղաք, զոր Վիրք Ախալ քալաք ասեն, եւ զՇամշուլդէ եւ առնու կին զդուստր Կիւրիկէի թագաւորին եւ զդուստր քեռ թագաւորին Վրաց Բագրատայ»։ Միաբանելու համար այս չորս պատմագիրները՝ պէտք է ենթադրել թէ Կիւրիկէի կինն էր Բագրատայ Վրաց թագաւորի քոյրը. ուստի եւ խորքը Կիւրիկէի աղջկան եւ Վրաց թագաւորի քրոջ դստեր մասին է։ Այս խմաստով ալ հասկցած է Բրոսէ, որ ցուցանչէրի «որ էր նա դուստր եղբօր Կիւրիկէի Հայոց արքայի», ասոր պարզապէս կը թարգմանէ. «Դուստր արքային Հայոց Կիւրիկէի»։

Այսպէս ժամանակի մը համար խաղաղեցաւ երկիրը. եւ Կիւրիկէ ջանաց նուիրուիլ ներքին բարեկարգութեան։ Անիի թագաւորութեան բարձմամբ ինքն էր քաղաքական միակ անկախ ներկայացուցիչն եւ իրեն կը հայէր բարեկարգել ազգային գործերը։

1082ին միջոցներուն էր որ Գրիգորիս Վահրամ կաթողիկոսն երկար ժամանակ դեգերելով Կ. Պոլիս, Եգիպտոս եւն, աթոռն թափուր ձգած էր։ Թէեւ իրեն տեղապահ նշանակած էր զԳէորգ Լոռեցի, բայց նա ինքնագլուխ կառավարելով աթոռն, հակառակ Գրիգորիսի բացայայտ հրամանին, անգոհութիւններ յառաջ եկած էին։ Հիւսիսային Հայաստանցիք, որոնց գլուխն անցած էր Անիի Բարսեղ եպիսկոպոսն, խորհեցան ձեռնադրել տալ իրենց համար նոր կաթողիկոս մը. այս առաջարկութիւնն ներկայացուց Բարսեղ Կիւրիկէի արքունիքն ի Լոռի։

Կիւրիկէ Հրամայեց ժողով գումարել։ Փոխադա-րձելին ընտրուեցաւ Հայրապետի վանքը. Հաստա-տուեցան բազմաթիւ ժողովականներ, որոնց թուին մէջ էր նաեւ Սանահնու Աղուանից կա-թողիկոսը։ Կաթողիկոսութեան թեկնածուն էր Բարսեղ եպիսկոպոս որ նոյնհետայն Աղուանից Սանահնու կաթողիկոսէն ձեռնադրուեցաւ. "Յա-թոռ Ս. Գրիգորի, ի վերայ ամենայն աշխարհին Հայոց Հրամանաւ Կիւրիկէի թագաւորին եւ տեառն Սանահնոյի"։ Այս դէպքը յառաջ բե-րինք Ուռհայեցւոյ տուած տեղեկութեան հա-մաձայն[1]։ Մխիթար Այրիվանեցի եւ իրեն հետ Կիրակոս այս դէպքին հետ կը կապեն նաեւ Հաղ-բատայ Սարգիս արքեպիսկոպոսի ընտրութիւնը, որ յառաջագոյն Կիւրիկէի պալատան երէցն էր։ Մ. Այրիվանեցի կը գրէ (էջ 60). "Իսկ Կիւրիկէ որդին Դաւթի եւ ձեռնադրել Յովսէ-փայ Աղուանից կաթողիկոսին զտէր Բարսեղ եւ զրան երէցն իւր զՍարգիս եւ ձեռնադրել եպիսկոպոս Հաղբատայ եւ յայնմ հետէ եղեւ

[1] Ուռհ., էջ 220. "Դարձեալ ի թուականութեանն Հայոց ի յամի ՇԼ (1081) արքեպիսկոպոսն Շիրակայ, որ էր ի քաղաքն Անի, որոյ անուն տէրն տէր Բարսեղ, յաջոր-դեալ գնայր յաշխարհն Հայոց ի յԱղուանն գաւառ ի Լոռէ քաղաք առ թագաւորն Հայոց Կիւրիկէ՝ որդի Անհողինին Դաւթի, որդւոյ Դաւթայ (?) եւ խնդրէր Բարսեղ առնել ձեռնադրութիւն կաթողիկոսութեան Հայոց։ Զոր ժողո-վեալ թագաւորն Կիւրիկէ եպիսկոպոսունս Աղուանից աշխարհին . . . ի Հաղբատ, ձեռնադրեցին զՏէր Բարսեղ կա-թողիկոս յաթոռ սրբոյն Գրիգորի՝ ի վերայ ամենայն աշ-խարհին Հայոց Հրամանաւ Կիւրիկէի թագաւորին եւ զեռան Սանահնոյ՝ որ ունէր զաթոռ սրբոյ առաքելոյն Թադէոսի"։

աթոռ»։ Դարձեալ յամի 1076 «...եւ տէր Բարսեղ որ յարեւելս, զոր ի Հայրապետ ձեռնադրեցին տէր Ստեփանոս կաթողիկոս Աղուանից եւ Թագաւորն Կիւրիկէ։ Յորում աւուրս եւ զՍարգիս աւագերէցն ալըունի գրանն արհեպիսկոպոս ձեռնադրեցին երկոքեան կաթողիկոսքն սուրբ ուխտին Հաղբատայ, տալով միմեանս յերկուց կողմանց»։

Իսկ Կիրակոս (էջ 56) կը գրէ. «Իբրեւ ետես Կիւրիկէ այլպայ յազգէն Բագրատունեաց որդի Դաւթի ... եթէ եթող տէր Գրիգորիս զաթոռ իւր եւ գնաց ի Հռոմ, կոչեաց առ ինքն զտէր Յովսէփ կաթողիկոսն Աղուանից եւ ետ ձեռնադրել զտէր Բարսեղ՝ կաթողիկոսն Հայոց, եւ զՍարգիս ամն գրան երեց Կիւրիկէի՝ ձեռնադրեն եպիսկոպոս Հաղբատայ, եւ յայնմհետէ եղեւ աթոռ եպիսկոպոսի»։

Յայտնի է թէ զԲարսեղ ձեռնադրողը միայն Ստեփանոս կրնայ ըլլալ եւ ոչ թէ Յովսէփ (տես Հայապատում Բ. 341 եւ Չամչ. Բ. 813 եւ Գ. 7, 13, 25.)։ Վերջեայ թէ Այրիվանեցւոյն եւ Կիրակոսի այս երկու կաթողիկոսներն իրարու հետ շփոթելու պատճառն եղած է նոյն անուն Աղուանից Յովսէփ կաթողիկոսին աշխարհահռչակ անունն, ինչպէս նաեւ յաջորդութեան փոքրիկ անճշդութիւնը։

Սամուէլ Անեցի (էջ 118) եւ Վարդան (էջ 106) եւ Մխիթ. Այրիվ. (էջ 60) միաբան կը յիշեն թէ Բարսղի ընտրութենէն առաջ Կիւրիկէ եւ Գեւորգ (Գորգի ըստ Վարդանայ) Վրաց

«Ի թուականին Հայոց ՇԺ. ի թագաւորութեան Կիւրիկէի որդւոյ Դաւթի արքայի...», Անդ. էջ 24.

«Ի ՇԿԲ. թուին ի հայրապետութեան տէր Դէոսկորոսի. ի թագաւորութեան Կիւրիկէի արքայի եւ Սմբատայ եւ Հրանուշ թագուհի, դուստր Դաւթի արքայի, շինեցի զնշխարատուն եւ զեկեղեցիս եւ ետու զնորա չէնքն ի Սանահնին.» Անդ. էջ 24.

«Ի թագաւորութեան Կիւրիկէի... Եւ տէր Սարգիս առաջնորդս Հաղբատայ կանգնեցի զնշանս տէրունական զէն հաւատացելոց եւ պաշտպան թագաւորաց մերոց Կիւրիկէի, Սմբատայ եւ Դաւթի զարմի նոցա»: Անդ. էջ 25.

Կիւրիկէ Ա. թողեալ երեք որդի՝ Դաւիթ Բ., Աբաս Ա. եւ Ստեփանոս եպիսկոպոս, ու դուստր մը, զոր բռնութեամբ կնութեան առաւ Արփասլան.

Դաւիթ եւ Աբաս յաջորդեցին Կիւրիկէի թագաւորական գահին վրայ. իսկ Ստեփանոս ընդգրկեց եկեղեցական վիճակը, եպիսկոպոսացաւ եւ ներկայ էր իբրեւ այսպիսի Ցաւուշի 1139ի ժողովին, ուր ածուեցաւ Գրիգորիս Աղուանից կաթողիկոսը (ժողովոյն ներկայ եպիսկոպոսներուն թուին մէջ կը յիշուի նաեւ "Տէր Ստեփանոս որդի Կիւրիկէի, նոցունց՝ Դաւթի եւ Աբասայ՝ եղբայր»։ Հայապատում, էջ 342։ Վախճանեցաւ 1142ին. "Ի նմին (ՇՂԱ) ամի մեռաւ Տէր Ստեփանոս եպիսկոպոս որդի Կիւրիկէի թա-

գաւորի ի բերդին որ կոչի Խաչընձաքար․ (Հայա-
պատում, էջ 344)։

Ինչպէս Դաւիթ Անհողին իւր Սմբատ եղ-
բօր հետ ի միասին կը թագաւորէր, նմանապէս
Կիւրիկէ Ա․ իրեն բարձակից առած էր իւր Դա-
ւիթ եղբայրը։ Վարդան կը գրէ (էջ 100)
«Դա գնէ (փադլուն ամիրան) ընդ Դաւթայ
թագաւորին Ձորագետոյ եւ ընդ Կիւրիկէի թա-
գաւորին Աղուանից»։ Ինչպէս վերն բերինք Դա-
ւիթ Անհողին փեսայացաւ Կախեթի Կիւրիկէ
Դ․ ի հետ՝ առնելով անոր Զօրակերցել դուստրը։
Սոյն այս Կախեթի թագաւորս չունենալով
ուրիշ զաւակ իր կենդանութեան որդեգրած էր
իւր դստեր եւ Դաւիթ Անհողինին որդին՝ զԴա-
ւիթն որ պապին մեռնելէն վերջ անոր յաջորդեց։
Դաւիթով Կիւրիկեան Բագրատունի ցեղը նոր
ճիւղաւորում մը կ՚ունենայ եւ անկախ թա-
գաւորական իշխանութիւն մը կը ստանայ, եւ
քանի մը սերունդ յաջորդաբար կ՚իշխէ Կախե-
թի վրայ։ Մեր պատմութեան կարգը չընդհա-
տելու համար այս նոր ճիւղաւորումը պիտի
պատկերացնենք այժմ Կիւրիկեան ցեղի ճիւղա-
գրական տախտակին վրայ։

## 4. Դաւիթ Թագաւոր Մածնաբերդի (1089—1145).

## Աբաս Թագաւոր Տաւուշի (1089—1145):

Կիւրիկէի որդիք՝ Դաւիթ Բ. եւ Աբաս Ա. ժառանգ եղան հայրենի իշխանութեան։ Բայց երկար չկրցան վայելել իրենց ժառանգութիւնը. "Յետ մահուան (Կիւրիկէի), կը գրէ Կիրակոս, էջ 72, գունեալք ի վրաց որդիք նորա՝ ելեալ ի տանէ հայրենեաց գնացին ի Պարսիկս Դաւիթ եւ Աբաս. եւ առնուն ի նոցանէ ի ժառանգութիւն զՏաւուշ եւ զՄածնաբերդ եւ զայլ ան-գիւս„. Նոյնպէս կը գրէ նաեւ Վարդան, էջ 106. "որոց (այսինքն Գուրգենայ եւ Դաւիթ Անհողնի) թոռունքն Աբաս եւ Դաւիթ նեղեալ ի վրաց՝ չոգան առ սուլտանն Գանձայ եւ առին մէն մի բերդս եւ կային առանձինք„.

Թէ ի՞նչ կ'իմանան պատմագիրները "գու-եալք„ կամ "նեղեալք ի վրաց„ բառերով, կը մնայ անբացատրելի. կ'երեւայ թէ վրացիները, որոնց դէմ Կիւրիկէ Ա. "զամենայն ժամանակս իւր„ (Կիր. 72) պատերազմելով՝ պահեց երկիրն ազատ ոտնձգութիւններէ, պատերազմասէր եւ քաջ թագաւորին մահուընէն ետքը մտան բռնի ուժով Լոռի եւ հալածական վարեցին Կիւրի-կեան կորիւնները հայրենի ժառանգութենէն, որոնք իրենց ապաստանարանն փնտռեցին "ի Պարսիկս„, այսինքն Գանձայ կամ Առանայ տիրոջ

քով. Հայ Աղուանքի Աւարի գաւառին մէջ. Դարձեալ առեղծուածային կը մնայ մեզի համար, թէ ինչ պայմաններով Հիւրընկալեց զիրենք Աղուանայ տէրը եւ տուաւ անոնց «ի մառանդութիւն զՑաւուշ եւ զՄածնաբերդ եւ զայլ տեղիս»։

Վարդանայ խօսքերը, թէ առին մէն մի բերդս եւ կային տառապանօք կը ցուցնեն թէ երկու եղբայրներն իրարմէ անկախ կ'իշխէին իրենց ամրութեանց մէջ. Առաս կը նստէր Ցաւուշ բերդը, իսկ Դաւիթ Մածնաբերդ, բայց նաեւ այս ամրութեանց մէջ «կային տառապանօք», քանի զի «այս յետ աւուրց[1] անոնց դարձեալ Պարսիկք ի նոյանէ զՑաւուշ, եւ նորա բնակին ի Մածնաբերդ» (եր. 72), աւելի անձուկ շրջանակի մէջ։

Իրենց վիճակը շրարուղեցաւ յաջորդող քաղաքական փոփոխութեանց մէջ։ 1105ին Դզիլ ամիրան յարձակեցաւ Դուգարքի վրայ, առաւ Լոռին, Հաղբատն ու Սանահինը, եւ յառաջացաւ մինչեւ Դաւին, ուր սպաննեց Մանուչէի Արուեստր եղբայրը։ Թէեւ Անիի տէրը՝ Մանուչէ վրէժխնդիր եղաւ իր եղբօր արեան, Դզիլ ամիրան սպաննելով «ի վերայ գերեզմանի եղբօր իւրոյ» (Վարդան 113, եր. 60. Մխ. Այրիվ. 61) եւ Դաւինը յետս գրաւեց, սակայն այս յաղթութիւնները չփրկեցին Կիւրիկեան թագաւորութիւնը։ Քիչ վերջ Վրաց Դաւիթ թագաւորը զօրանալով՝ խլեց Պարսիկներէն Տփղիսն եւ Օր

[1] Ընդունած կ'ամփոփուի 1145ի դէպքերը.

բերելանց՝ Իւանէ ու Զաքարէ մեծ սպասալարներու քաջութիւններով առաւ Անին եւ ուրիշ ընդարձակելով իր սահմանները՝ 1118—1123 շրջանին արիւնոց նաեւ ամբողջ Կիւրիկեան թագաւորական երկիրներուն, կամ՝ ինչպէս կը գրէ Վարդան՝ «Տաւեալ եւ զՄուխուխ (Օլթի) եւ զսահմանս իւր եւ զԴուալ եւ զՏփրունական եւ զՏայուշ եւ զԿայեան եւ զԿայծոն եւ զԼոռէ եւ զՏաշիր եւ զՄահկանաբերդ եւ զբոլոր իշխանութիւնն Հայոց Կիւրիկէի եւ Աղուանից (Վարդ. 119), որոնց կառավարութիւնն յանձնեց Դաւիթ Իւանէի «եւ ի վերայ հայրենեաց իւրեանց տուաւ նմա (Իւանէի) ի թագաւորէն Լոռէ իւր գաւառովն, եւ Աղարակն անգի պարապանի եւ Շամշուլդէ որ էր հայրենիք նոցին[1] վերստին տուաւ գաւառովն. (Օրբ. 277)։

Այսպէս Լոռի իւր գաւառովն, եղաւ սեպհականութիւն Օրբելեան տան։

Դաւիթ եւ Աբաս մեծազին իրենց բերդերու մէջ ի Տաւուշ եւ ի Մածնաբերդ։ Ուրախալի որ եղաւ իրենց 1140 թուականը, երբ կաթողիկոս ընտրեցաւ իրենց իշխանութեան սահմաններուն մէջ Գրիգորիս Աղուանից կաթողիկոսը, այս մասին Մ. Գօշ կը հաղորդէ հետեւեալ մանրամասնութիւնները. «Արդ ի փակ Տէր Սահակայ յաջ-

[1] Օրբելեան կը 278 խաւեր՝ Զաքարեանց խնամութեան վրայ, ուշացիր կ՚ընէ, որ տանը «խնամութեամբ խառնեալ էին ընդ թագաւորին Վրաց եւ ընդ թագաւորին Հայոց Կիւրիկեանց, որք էին Բագրատունիք»։ Արդեամբ ալ Իւանէ Օրբելեան ամուսնացած էր Թագաւորին՝ Կիւրիկէ Բ.ի դստեր հետ։

խարհն Աղուանից ժողովեր զամենեսեան առ հատարակ ի տուն Արտաւայ Բագրատունւոյ, որդւոյ Կիւրիկէի արքային, որ եւ ժողովեալ ամենեցուն առաջի նորա ի բերդն որ կոչի Տաւուշ, ուր եւ ժողովեալ հարանց սրբոց եւ եպիսկոպոսաց. Թագաւորն Դաւիթ եղբայր Արտաւայ Թագաւորին, տէր Ստեփաննոս որդի Կիւրիկէի նոցունց եղբայր եւն... Եւ այսպէս միաբան հանդիսիւ եւ հաշակաւոր կոչմամբ ձեռնադրեցին կաթողիկոս Աղուանից զԳրիգորիս հօրեղբօրորդի Տեառն Ստեփաննոսի Աղուանից կաթողիկոսի. (Հայապատում, էջ 342. համմ. եւ Բարխուդարեան՝ Պատմ. Աղուանից 185).

Արտա, որ Տաւուշ բերդի մէջ ունէր իւր բնակութիւնը, 1145ին ենթարկուեցաւ Չօլի ամիրապետի յարձակմանց։ Չօլի այս թուին արշաւեց Աւանի վրայ «Եւ փութանակի երթայր ի բերդն Տաւուշ, յորում ամրացեալ էր թագաւորն Արտա եւ բազում ջանիւ ընդ երկար պաշարեալ զնա՝ ապա առնույր զբերդն. (Հայապ. 344)։ Արտա 40 օր ընդդիմացաւ պաշարման (Սամ. Անեցի, 133), բայց ի վերջոյ ստիպուեցաւ անձնատուր ըլլալ, անձին ապահովութեան պայմանաւ, ինչպէս կը գրէ Սամ. Անեցի. 133. «Էառ զնա (զՏաւուշ)՝ հանելով զԹագաւորն Արտա՝ առանց վնաս առնելոյ». Արտա ապա «անցեալ գնաց առ Թագաւորն Վրաց ի ՇՂԴ (1145) Թուականին. (Հայպ. 344)։

Այսպէս Արտա նաեւ իւր երկրորդ ժառանգութենէն կողոպտուած եւ հալածուած՝

ախոյանեցաւ դիմել իւր առաջին երդուեալ հակառակորդին. Վրաց Դեմետրէ թագաւորին (1125—1154) որ կ'երեւայ թէ Կիւրիկեանց ակարանալուն՝ այլ եւս անկասկած անոնց վտանգաւոր ըլլալէն՝ հաշտութեան ձեռք կարկառեց Հայկազեան Աբասին եւ տուաւ բնակութիւն իւր երկրին մէջ։

Բայց Աբասայ օրերն հաշուած էին արդէն. Հաւանօրէն ոչ շատ վերջը վախճանեցաւ, եւ մարմինն ամփոփուեցաւ Հաղբատ իւր նախնեաց դամբարանին մէջ։

Նոյն ՇՂԴ (1145) թուին մեռաւ նաեւ թագաւորն Դաւիթ 'ի յամրոցին որ կոչի Մածնաբերդ. (Հայապատում, 344)։ Կը յիշուի Դաւթի մէկ ուստրը՝ Կիւրիկէ Բ. (անդ եւ Պէր. 72), եւ մէկ դուստրը Ռուզուքան (տես վարը արձանագրութեանց մէջ)։

## 5. Կիւրիկէ Բ. 1145—1185։

Մածնաբերդի թագաւորին՝ Դաւթի յաջորդեց իւր որդին Կիւրիկէ Բ. «այր բարեբարոյ եւ կատարեալ 'ի գործս առաքինութեան քան զհայրն իւր» (Պէր. 72)։ Որովհետեւ Աբաս Ա. վախճանեցաւ անժառանգ, անոր ստուերական իշխանութիւնն ալ ժառանգեց անշուշտ Կիւրիկէ։

Հայապատում էջ 350, կը պատմուի թէ Վրաց Դաւիթ թագաւորը Դեմետրէի որդին, այն ինչ բարձրացած թագաւորական գահը

(1154) դէպի Հայ ազգն «այնքան բարեպաշտութեան ցուցանէր, մինչ զի առաքէր եւ կոչէր զթագաւորն Կիւրիկէ (Բ) որդի Դաւթի¹ թագաւորի Բագրատունւոյ, եւ խոստանայր նմա դարձուցանել ի նա զժառանգութիւն նորա, զոր նախնեացն իւրոց հանեալ էր ի նոցանէ. եւ այնպէս պարգեւօք յղարկէր զնա ժամադիր եղեալ նմա... բայց զօրապիւրն զկամս (Թագաւորին) իւրեւ գիտացին իշխանքն Վրաց յոյժ նախանձաբեկ եղեն, մանաւանդ Որբելեանքն կոչեցեալ ազգ, եւ զեղ մահու արբուցեալ սպանին զԹագաւորն Դաւիթ, նոյն 1154 թուին։

Օրբելեանց հակառակութիւնն Կիւրիկեան տան դէմ հասկանալի է, քանի որ անոնք եղած էին տէր Կիւրիկեան թագաւորական հողերուն, թէեւ քիչ յետոյ խառնուեցան խնամութեամբ Կիւրիկեան արեան հետ։ Այսպէս միանգամայն չքացան այն յոյսերը, որոնք անշուշտ արթնցած էին Վրաց թագաւորի խոստմամբ Մածնաբերդի տիրոջ մէջ։ Կիւրիկէ Բ.ի գործերուն վրայ ուրիշ տեղեկութիւն չէ հասած մեզի. բայց «բարեաց փոխեալ յաշխարհէս (1185) թողու ժառանգական զորդին իւր զմանուկն Աբաս» (Կիր. 72)։

Կիւրիկէի կինը կը յիշուի Թամար, որմէ ունեցաւ հինգ զաւակ՝ եւ մէկ դուստր։ Դուստրերընները՝ Մարիամ, Մամքան, Ռուսուդան,

---

¹ Սխալմամբ մեր ընդհանուր ակնարկին մէջ Թագաւորին անունը քով փակագծի մէջ Ը նշանը տպագրած էինք, որ պէտք էր ըլլալ Դաւիթ Բ.։

վանք եւ բաւրինա, որոնց անունները պատմութեան մէջ անմահացած են իրենց շինարարական գործերով։ Կիւրիկեան տան այս ազնիւ ժառանգորդները եղած են պաշտող իրենց նախնեաց յիշատակներու, եկեղեցասէր եւ շինարար։ Մինչեւ այսօր կը կարդացուին անոնց արձանագրութիւնները Կիւրիկեան երկիրին հին հին կերտուածքներու վրայ։ Կարելի որ կը համարիմ ամփոփել այս տեղ այս արձանագրութիւնները իբրեւ գրաւականներ անոնց շինարարական գործունէութեան եւ բարեպաշտութեան, որ անշուշտ պատիւ է Կիւրիկեան տան։

1. *Մարիամ*, որ կ'երեւայ թէ հաւատութեամբ անցուց իր օրերը (քանի որ արձանագրութեանց մէջ չի յիշուիր իր ամուսինը), այլ եւ այլ շինութիւններ կատարած է իր քոյրերուն հետ՝ Քոբայրի, Հաղբատի, Սանահնի վանքերու մէջ։ Հաւանօրէն նոյն է այն Մարիամն, զոր կը յիշէ Վարդան. «էին եւ կանայք թագաւորազունք կրօնաւորեալք հաւատութեամբ ի Քոբայրն՝ Խորաստու[1] եւ *Մարիամ*», որոց Յովհ. Սարկաւագ վարդապետն կը գրէր «զգաւշական խրատս» (Վարդ. 122)։

Քոբայրի եկեղեցւոյն կից մատուռի մը վրայ կը կարդանք հետեւեալը.

«Քրիստոս Աստուած յիշեա զՄարիամ եւ զՌուսուդան ի գալստեան քում»։

[1] Թէ Խորաստու ինչ ծագում ունէր, չենք գիտեր. վախճանած եւ թաղուած է Սանահին 1101ին (Շիր. տաղ. Ձ՛՛)։ Brosset, Description, p. 65.

Սանահին՝ Ես Մարիամ՝ Բագրատունի, դուստր արքային Կիւրիկէի. կանգնեցի զխաչս զայս եւ եդու զիմ՝ հայրենի սուրբ նշանն մեծածախս պատուարանով ս. Աստուածածնիս, սկին արծաթի եւ տանացոյց

Ես Թամթինայ, նոյն արքայի դուստր, քոյր Մարիամու, կանգնեցի զխաչս զայս...

Ես Ռուսուդնայ, նմին արքայի դուստր, քոյր Մարիամայ, կանգնեցի զխաչս... (Կաստանեանց՝ 40)։

Հաղբատ՝ Ես Մարիամ՝, դուստր Կիւրիկէի արքային, հանդերձ Ռուսուդնայիւ շինեցի զգաւիթս եւ ծածկեցի իմ՝ արդեամբքս. տուի այգի՝ հատի զճորտութիւն... ծառայարդարին մեզ պատարագ լինի (անդ)։

2. Ռուսուդան, որ ամուսնացաւ խանէ Օրբէլեանի հետ եւ նման իր Մարիամ քրոջ՝ եղաւ բազմաթիւ եկեղեցիներու շինութեան եւ նորոգութեան պատճառ, ինչպէս կը վկայեն շատ մ՝արձանագրութիւններ եւ յիշատակագիր մը 1172—73 թուէն, որուն խօսքերը կարեւոր կը համարիմ՝ յառաջ բերել հոս։ Յիշատակագիրս (ի վերջ Ճառընտիր Բարսղի) խօսելով Հաղբատի Բարսեղ արքեպիսկոպոսի արժանաւորութեան մասին, կը յաւելու. «եւ յամենայնի եղեւ պատուեալ քան արժանեաց եւս առաւել ի մեծ ամիրապատալարէն յԻւանէէ եւ ի զուգակցէ

Նորին ի յարքունէր Թագուհւոյն Ռուսուդանայ, որ էր յազգէ Բագրատունեաց մերոց կոչուեալ ազգին Թագաւորաց. որ ցուցանէր զգութ հարց իւրոց. եւ նորոգէր զիւրոյ նախնեացն սէր առ ամենեսեան, առ հեռաւոր եւ մերձաւոր ուխտս սուրբս. քանզի ամենայն տեղի որ ի նախնեացն սորա շինեալ էին եւ նուաճեալ յնոսա, ի սորա աւուրս պայծառանային եւ նորոգէին վերստին. Եթէ ի մերում գաւառի (այսինքն Ձորոգետայ) եւ եթէ ի գաւառն Անւոյ սեփական քաղաքին իւրեանց. եւ ի նոյն իսկ յԱնի. եթէ ի գաւառն Դպրնայ. վասն զի յամենայն տեղիս իշխանու-թիւնն եւ երկիւղն մեծի սպարապետին Իւանէի առն սորա հասանէր եւ սա ջանայր զի զիւր նախնեացն շինեալ եկեղեցիսն պայծառացուցէ. որ եւ կամեցաւ զզերեզմանս առաջնոց թագաւո-րացն որ ի սուրբ ուխտին՝ առաւել պատուել եւ պայծառացուցանել. վասն որոյ եդ զսուրբ ուխտս ի ձեռս տեառն Բարսղի,... (տես Մատենա-գարան, էջ 339—41, հմմտ. եւ Շիրակ, էջ 100).

Այս գրուածքները կ՚արդարացնեն նաեւ արձանագրութիւնները (Քոբայր, Սանահին, Հաղ-բատ) որոնք վերը յիշուեցան. Բացի Հայաստան կառուցած շինութիւններէն՝ Ռուսուդան կառոյց նաեւ վանք մը Աղ գետի հովտին մէջ, զոր այժմ Կանանչ վանք կ՚անուանեն. Վանքին եկեղե-ցւոյն մուտքին վրայ Բարթողոմէ կարդացած է հետեւեալ պատկառուոր տողերը վրացերէն լե-զուաւ (Mélanges Asiatiques II, էջ 106—12).

տանուն որդւոյն Հեթ. եւ կրօնաւորած. արձանագրութիւնն է.

«...Ես Մամիա Թագուհի, ամուսին Հասանայ, դուստր Կիւրիկեայ Թագաւորին, կացաք յաւագութեան ամս Է, ես եւ այր իմ՝ եւ Թողեալ զՃոխութիւնս որդւոց մերոց՝ եկաք ի վանքս մեծ առ Գրիգորիս եւ որդին մեր Հասանայ նորին, եւ զգեցաք զձեւ միանձանց, եւ կանգնեցի զԽաչս... յաղաւթս յիշեցէք. ՈԼԱ (1182) Թուին» (Կոստանեանց՝ էջ 34)։

«...Հասան, որդի Վախթանգայ, որդւոյ մեծին Հասանայ, տէր Խոյախանաբերդոյ, Խաչենոյ, եւ ամուսին իմ՝ Մամքան, դուստր Բաղաց Թագաւորին¹, միաբանեցաք մեծ եւ հռչակաւոր սուրբ ուխտիս Կեչառուաց եւ... յանեղական Նետողաց բազում գանձիւք... նորոգեցաք... Թվին ՈԼԷ (1188)... միաբանքն ընկալան եւ սահմանեցին մեզ Բ. աւր պատարագ ամէն եկեղեցիքս. զաւագ զատիկն ինձ եւ զ. շաբաթ աւրն Մամքանայ...» (անդ. էջ 92—93)։

Իսկ կը յիշուի նաեւ 1163 թուի արձանագրութեան մը մէջ ի Հաւուտառուկ.

Թվին ՈԺԲ. էր յիշխանութեան Հասանա, որդւ Վախտանգա եւ ամուսնո նորա Մամքանա, եւ տ. Յոհան քմերորդի տ. Գրիգորո, եւ Գեորգ.

---

¹ Աւշադրու է հոս վերջին Կիւրիկեան տան «Բաղաց Թագաւոր» յորջորջանքը։

եղբայր որդի, եւ այլ միաբանք շինեցաք զեկե-ղեցիքս,... (Կոստանեանց՝ անդ, էջ 31)։

4. Վահէ. կին Աբասի, որ անգամ մը միայն կը յիշատակուի հետեւեալ արձանա-գրութեան մէջ.

*Ի թուին ՈԼԸ (1189) յաստուածընտրու-թեան տեառն Բարսղի հայրապետի՝ ես Դաւիթ որդի Աբասին... շինեցի զխորանս եւ զեկեղեցիս ի վերայ հանգստարանի հաւր իմոյ եւ քուեր Փուրթուխանին։ Արդ աղաչեմ՝ սուրբ եղբայրութիւնդ, զաղու-ճացից շաբաթ աւրն եւ զկխորանսկէն իմ մայրն Վահէի՝ դստեր Կիւրիկէի թագաւո-րին եւ իմ քուերն Փուրթուխանայ երկու քառասունք եւ իմ հաւրն Աբասին եւ յետոյ ինձ եւ իմ քուերն եւ մայրն. ով խափանէ մեր խղճիս պատասխանի է առաջի Աստուծոյ* (Կոստանեանց՝ անդ, 37)։

5. *Թամթիա.* յիշուած անգամ մը Կի-րակոսի մօտ (էջ 72) եւ այն արձանագրութեան մէջ ի Սանահին, զոր յառաջ բերինք վերը։

Իսկ *Աբաս*, որ կը յիշատակուի նաեւ արձանագրութեան մը մէջ (տես վերը) եղաւ ժառանգակալ թագաւորութեան։

### 6. Աբաս Բ. 1185—1192։

Աբաս դեռ երիտասարդական մանուկ էր երբ վախճանեցաւ հայրը (Կիր. 72)։ Կ՚երեւայ էր Թամթիա քրոջ խնամակալութեան տակ

այմ եւ իւր կողմը շահելով բերդի բնակիչները, յանկարծակի յարձակեցաւ Դաւթի վրայ եւ «ըմբռնելով զԴաւիթ հանդերձ ամենայն ընտանեօք՝ հանին արտաքս ի բերդէն, եւ ետուն զբերդն յԱղթարթան» (Կիր. 73)։

Ժամանակ մը վերջը Աղթարթան իշխանութիւնը թողուց իւր Կիւրիկէ որդւոյն եւ ինքն կրօնաւորեցաւ «ի վանքն որ կոչի Գետակիցք», Կիրակոս կը յաւելու. «առ որ եհաս յաւուրս մեր, որոյ ի ծերութեան ցաւեցին ոտք» (Կիր. 72). կրօնաւորելէն յառաջ թէ եւս, չգիտենք։

Աղթարթան ունեցաւ երկու որդի Կիւրիկէ եւ Յովհաննէս։ Վերջինս ինք զինքը կղերական կոչման տուաւ եւ Հաղբատի համանուն եպիսկոպոսին մահուանէն ետք «եկաց ի տեղի նորա Յովհաննէս որդի Աղթարթանայ՝ ի Մածնաբերդէ յազգէ Բագրատունեացն՝ ամս երկու, որ չեւ էր ձեռնադրեալ եպիսկոպոս վասն շփոթման ժամանակին որ յետոյ ձեռնադրեցաւ ի կաթողիկոսէն Աղուանից՝ կողմանցն Մածնաբերդին» (Կիր. 56)։

## 8. Կիւրիկէ Գ. 1232:

Կիւրիկէ իւր հօր ձեռքէն իշխանութիւնը կ'առնուր այնպիսի ժամանակ մը (1232), երբ երկիրն կը գտնուէր արեւելքէն սպառնացող արհաւիրքի առջեւ։ Թաթարական քանդող, գերող հրոսակախումբերն մտեր էին Աղուանից

սահմանները։ Մոլար Նուրի առաջնորդութեան տակ։ Վահրամ իշխանի բերդերը՝ Տաւուշ, Կածարէթ, Տէրունական, Երգեւանք ինկան էին նոր թշնամւոյն ձեռքը։ Նոյն վտանգն կը սպառնար նաև Մածնաբերդի[1] որ էր Կիւրիկեանց Աղսարթանայ (Վարդ. 145) և զոր ունէր Կիւրիկէ Բագրատունի որդի Աղսարթանայ. (Կիր. 129)։ Ու Աղսարթան և ոչ Կիւրիկէ կրցան պաշտպանել Մածնաբերդը. ստիպուեցաւ անձնատուր ըլլալ վայրագ բռնակալին։ Այս նկատմամբ մանրամասնութիւն չին հաղորդեր պատմագիրները։ Որովհետեւ Թաթարները ինքնակամ հպատակողներուն թոյլ կու տային մնալ իրենց իշխանութեան մէջ (Վարդ. 145) կարելի է մտածել թէ Կիւրիկէ ալ կամաւ խոնարհեցաւ ի հնազանդութիւն Մոլար Նուրի և մնաց Մածնաբերդի տէր։ Ուրիշ տեղեկութիւն չունինք իր մասին. նոյնպէս թէ երբ վախճանեցաւ։

9. *Փահլաւան, Թաղիադին, Աղսարթան Բ.։*

Կիւրիկէ Գ. երեք որդի ունեցաւ՝ Փահլաւան, Թաղիադին և Աղսարթան (Կիր. 73)։ Ասոնց մէջ առաւելին հանդիսացաւ Թաղիադին։ Ասիկա մին էր այն հայ իշխաններէն (Աւագ,

1 Մագաքիա Աբեղայ. 16 Մածնաբերդի (գրուած՝ զՄերնայ բերդ) առումը կը նշանակէ Թաթարներու առաջին յարձակման, այն է 1214/5ին երբ անշուշտ Աղսարթան դեռ տակաւին իշխան։

որդի Շահնշահի, Ներքում որդի Սիսակարի եւն) որոնք մասնակցեցան Հուլաղու խանին արշաւանքին Բաղդադի ամիրապետին դէմ (1256ին). Ի գործին պաշարեց Հուլաղու Նփրկերտ (Մարտիրոսաց քաղաք), որ յետ երկամեայ խիստ պաշարման ինկաւ (1259) առաջ թշնամեաց (Վարդան 150, Մաղաքիա 40, Օրբել. 296). Թադիադին այս արշաւանքէն հետը բերաւ ընծայ աւանդ մը՝ Ս. Բարդուղիմէոսի նշխարքներէն, զոր ձեռք անցուցած էր Նփրկերտի մէջ. այս մասին կը գրէ Մաղաքիա էջ 41. «Իսկ մեծ իշխանն Հայոց Թադիադին անուն յաղթէն Բաղդատու ներաց ընծանեալ երէց մի Սարգիս եւ ի խիստ անձեալ, եղիա զաջ սրբոյ առաքելոյն Բարդուղիմէոսի. եւ առեալ մեծաւ ուրախութեամբ յաշխարհն իւրեանց յարեւելք եւ եդ ի վանս իւր: Եւ յետոյ Հարկեալ ի մեծ իշխանէն Արծրունեաց որ աւր Սադուն անուն եւ նմա. եւ առեալ Սադունն տէրն Հաղբատայ մեծ եւ Հռչակաւոր սրբոյ ուխտին, եդ զսուրբ աջն Բարդուղիմէոսի առաքելոյն ի սուրբ ուխտն Հաղբատ. եւ է անդ առ այսօր»:

Թադիադին կ'անհետանայ պատմութեան մէջ. իր զաւակներէն կը յիշուի յանուանէ միայն՝

## 10. Սարգիս:

Ինչպէս կ'երեւայ՝ Թադիադինի մահուամբ Սիւրիկեան հին փառքի վերջին կայծերն ալ կը

յարմիչէին տակաւ տակաւ։ Սարգիս իւր փառապանծ նախնեաց վերջին սպառ լոյսն կը ներկայանայ։ Ընկեր փոխանակ նոր քաջութիւններով ժառանգութիւնն ապահովելու, ամբասներու եւ նոյն իսկ ընդարձակելու, կամաց կամաց կ'օտարացնէր եղածն ալ, մաս առ մաս ի վաճառ հանելով։ Թերեւս ժամանակները փոխուած էին։ Իր անուան միակ յիշատակութիւնն ունինք հետեւեալ արձանագրութեան մէջ որ կը գտնուի Հաղբատ (Բրոսէ՝ Description, p. 23, Կոստանեան, էջ 93).

*"Ի թուին Հայոց ՈՂԸ (1249). Կամաւն Աստուծոյ ես Գրիգոր... մեծ յուսով ապաւինեցայ ի սուրբ Նշանս եւ զիմ հոգեբաժին զեղն, որ գանձով գնեալ էի ի Թաղիաթինի որդւոցէն ի Սարգսէն, զԱգոստածոր որ կոչի Մախմուտ, որ ետու ի սուրբ Նշանս... ընկալան... եւ սահմանեցին զամէն եկեղեցիս իմ անուն պատարագել զՔրիստոս... եւ զսեղանն յիմ անուն դնեն, որպէս զՏնանայքին...։*

Ընտանութեան մը համեմատ «Բարսամ գիւղացի Մելիք Ռստամի նախնիքն ծագած են Բագրատունի թագաւորազն սերնդէն. այս է Կիւրիկեան թագաւորներու յետնազաներէն» (Բարխուդարեան՝ Արցախ 319)։ Դժուարին է հիմնուած աւանդութեան վրայ, որ իւր սկիզբն ունի 1600էն, գտնել կապակցութիւն մը Թագիադինեան շառաւիղներու Մելիք Ռստամի նախնեաց հետ։

Այսպէս Կիւրիկեան թագաւորութիւնը իր գոյութեան 150 ամեայ շրջանին մէջ կատարելով Արեւելք համար դեր մը՝ կամաց կամաց տարրալուծուեցաւ եւ կորսնցուց իր հետքը պատմութեան մէջ։

Յետահայեաց ակնարկ մը անոր պատմական կեանքին վրայ կ'ազդէ մեզի զանազան խորհրդածութիւններ։

Անջատելով Բագրատունեան պետական կազմէն եւ որ աւելի ձգտելով բացարձակ անկախութեան՝ նման իր քոյր թագաւորութիւններու, ոչ միայն անկարացուց կեդրոնական պետութեան ոյժը եւ եղաւ պատճառ անոր արագ անկման, այլ եւ ինքնին իր անձուկ սահմաններուն մէջ պաշարուած հզօրագոյն եւ թշնամի ազգերէ՝ եղաւ նշաւակ անոնց աշխարհակալ ձգտումներու։ Այս յատկապէս Անիի թագաւորութեան կործանումէն ետքը։ Այսպատան իրենց անկախանձնեան ուժին՝ որ մը յառաջ կամ ետքը իրենց ալ գոհ պիտի երթային հզօրագոյներու։ Դաւիթ Անհողին՝ Կիւրիկեան թագաւորութեան այս կարողագոյն դէմքը, որչափ ալ աշխատեցաւ ամրացնել իր իշխանութիւնը եւ Անիի թագաւորութեան բեկորներով ընդարձակել իր սահմանները, բայց իր բախտախնդիր աշխարհակալութեանց յաջողութիւն եւ ձախորդութիւն հաւասարապէս բաժին ինկան։ Չենք կրնար ըսել թէ աւելի բախտաւոր պիտի ըլլար Կիւրիկեան տունը եթէ այս խիզախ թագաւորն հետեւած ըլլար աւելի չափաւոր եւ

խաղաղասէր քաղաքականութեան մը։ Իր յաջորդներու փորձը այս նկատմամբ չպսակուեցաւ լաւագոյն արդիւնքով։

Ցորչափ Կաւկասեան մեծ իշխանութիւնք հանդուրժող քաղաքականութեան մը հետեւելով չէին կարկառած իրարու հաշտութեան ձեռք եւ կազմած զինակցութիւն մը հասարակաց թշնամւոյն դէմ, որ կը սպառնար Դարականէն, չէին կրնար զուարթ նայիլ ապագային եւ իրենց գոյութիւնն ապահոված զգալ։ Բայց ժամանակին չհասկցաւ քրիստոնեայ Վրացի մեծ ազգութեանց իրարու հետ այս սերտ միութեան անհրաժեշտ պէտքը։ Ընդեր քով քովի՝ ապրեցան անհաշտ՝ անդադար կռուի մէջ իրարու հետ։ Թէեւ մէկ կամ միւս կողմը ունեցաւ յաջողութիւն միւսին վրայ, բայց իրական արդիւնքն եղաւ՝ յաղթելով հանդերձ յաղթուիլ, անդադար տկարանալ։ Այսպէս ուժասպառ էր քրիստոնեայ Արեւելք, երբ թաթարական բիրտ ոյժը երեւցաւ Ժ.Գ. դարու առաջին քառորդին իրենց սահմաններուն վրայ (1214). ոչ միայն Կիւրիկեանք Մածնաբերդի պարիսպներու առջեւ եւ Զաքարեանք հին Կիւրիկեան սահմաններու վրայ չկրցան ընկրկել զանոնք, այլ եւ հզօրագոյն Վրաստանը տկար զգաց ինք զինքը եւ նահանջեցաւ՝ թողլով հին քաղաքակրթութիւնը ասոր թաթար հրոսակախումբերու։ Այսպէս ոտնակոխ եղան բոլոր մեծ իշխանութիւնները, որոնք ինքնուրէն ազնուական կը ծանուցուէին, եւ ոչնչացան. անոնց թուին մէջ նաեւ Կիւրիկեանք։

Հիւսիսային Հայաստանի մէջ կատարեց սակայն այս փոքրիկ թագաւորութիւնը յաջող դեր մը երկրին քաղաքակրթական զարգացման համար եւ ունեցաւ բարեբար ազդեցութիւն ժողովրդեան բարօրութեան նկատմամբ։

ԺԲ. դարուն՝ Կիւրիկեան թագաւորութեան այս ոսկեդարուն, նկատուեցաւ վերին Հայաստան գիտութեան կեդրոն, ուր Հաղբատ, Սանահին եւ Քոբայրի մենաստանները ծաղկեցան։ Յովհ. Սարկաւագ, Վարդան Հաղբատացի, Դաւիթ Քոբայրեցի, Գրիգոր Տուտէորդի, Գրիգոր Արքաուն որդի եղան լուսաւոր ներկայացուցիչները այս շրջանի հայ գրականութեան. հոն կը դիմէին Հայաստանի այլ եւ այլ կողմերէ, հետեւելու առ ասոս հմուտ ուսուցիչներու գիտութեանց։ Նաեւ "կուսանք թագաւորազունք," լքած արքունեաց շուայլ շրջապատը, նոյն մենաստաններու մէջ կը ճգնէին հոգեւոր կեանք մը։

Կիւրիկեան տունը ջանք տարաւ ոչ միայն իւրովսանն նպաստել գիտութեանց՝ քաջալերելով վաստակաւոր հեղինակները, այլ եւ գումարեց եկեղեցական բարեկարգութեանց համար ժողովներ, նորոգեց հին մենաստանները, կառուց նոր եկեղեցիներ, եւ օժտեց զանոնք առատ նուիրատուութիւններով։ Ստեղծեց անդորր շրջան մը՝ գիտութեան պայծառութեան համար։

Բայց աւա՜ղ որ երկար տեւողութիւն չունեցաւ անդորրութեան այս շրջանը։

## ԿԱԽԵԹԻ ՄԷՋ ՀԱՅԱԶԳԻ ԹԱԳԱՒՈՐՆԵՐ ԿԻՒՐԻԿԵԱՆ ՑԵՂԷՆ

Դաւիթ Անհողինի վրայ խօսելու ատեն յիշեցինք թէ Լոռիի Կիւրիկեանց թագաւորական ցեղը այն երկրին վրայ սահմանափակուած չմնաց, այլ ճիւղաւորուեցաւ դէպի Կախեթ։ Մեր խոստման համեմատ այժմ հետամուտ պիտի ըլլանք այս ճիւղին պատմութեան։

Սկզբունքով վրական ճանչցուած գաւառի մը մէջ հայ հարստութեան մը հռչակումը գուցէ զարմանք առթէ, այս պատճառաւ անդրադառնանք այս առթիւ նաեւ սա հարցին՝ Կախեթ վրական էր թէ հայկական։ Աչքի առջեւ ունենալով պատմական բոլոր տուեալները, իրականութեան աւելի համաձայն կը համարինք այն կարծիքը, որ բնակչութեան մեծամասնութեան տեսակէտով երկիրը հայկական կը յայտարարէ, թէեւ իշխանութիւնը քաղաքականապէս մէկ կամ միւս ազգին մենաշնորհը հռչակելու չի յանդգնիր, վասն զի ազգութիւնները բաղձացուած պայծառութիւնը չունէին այս մասին։ Բրոսէ առանց վարանելու անպայման կը հաստատէ. «Դէպք է, ինչպէս որ ես կը կարծեմ եւ խորապէս համո-

գուած եմ, հաստատել թէ Կախեթ ի սկզբան ու եղի Հայկական էր քան վրական. (Monographie des monn. arm., էջ 33). Արդէն հեղինակութիւն մը քաղ էր իրմէ յառաջ. «Վրաստանը միշտ վրական եղած չէ. (Ս. Մարթէն, ի Վախուշտ. Նկարագրութիւն, XXIX). Բնականաբար Վրա-ցիները Կախեթի մէջ Հայերու գոյութիւնն ան-գամ կ'ուրանան, սակայն ի գուր. Հայ մա-տենագիրներու. Ճնշող վկայութիւնը վրական Ժ. Դ. դարու տիրապետութենէն յառաջ Հայկա-կան էր ներկայացնէ Դուգարքը, եւ անոր մաս կազմող Կախեթը Ալիցկանայով (Համմ. Հին Հայ կուսմը՝ «Իշխանաց գիւղ».) Տեղինները Հաւա-քած է Ս. Մարթէն. Mémoires historiques et géographiques sur l'Arménie I, 74—86). Հակառակ կարծեաց կողմնակիցներին եւ ոչ իսկ վրական պատմագրութենէն փաստեր կրնան ցնութեան տանուլ ի նպաստ իրենց կարծեաց. մնացուածոց երբ Վախուշտ եւ Վախթանգ կը պատմեն, որ Հերեթի[1] (Կախեթի մէկ մասին) Առանեանց իշխանի ժամանակ երկիրն իւր Հայ ծէսը թողուց եւ վրական ծէսն ընդունեցաւ. Արդ՝ եթէ քիչ մը կը ճանչնանք երկու ազ-

[1] Կախեթի թագաւորութիւնը կը բաղկանայ երեք իշխանութիւններէ՝ Կախեթի, Հերեթի եւ Կուխեթի. առա-ջինը Կովկասի Լօրի եւ Թուրքէ գետի մէջ, երկրորդ Խուռնանի Հարաւ-արեւմուտք Լօրիի երկու եզերքներուն երկայ-նութեան, միւս ունենալով անդրադարձերու մէկ մասը մինչեւ Ալազանի գետաբերանը, երրորդը Արագուիի եւ Կուրի երկայ-նութեան մինչեւ Խունան։ Առանեանց Հերեթի վերջին իշխանին ժամանակ, որ կ'ապրէր Գուրգէնի ժամանակ, այս երկիրը Հայ դաւանութիւնը թողուց։

գերու իրար. Հանդէպ ունեցած Հակակրութիւնը չէնք կրնար Հաստատել որ վրացի իշխաններ զարերով կապուած ըլլան Հայ ծէսին. Հակառակութիւն կ'ըլլար այս. ասով վրական բանակէն ալ կը ձայնակցին Կախեթի գահէ բնակչութեան Հայազգի ըլլալուն (Համմ. Brosset, Monographie 34). Գալով իշխանութեան անոր՝ ալ մեծ. մասամբ Հայերու ձեռք ըլլալն ուրանալ կարելի չէ. երբ նկատենք Հայ պատմութեան մէջ ի հնուց յիշուած Գուգարաց բդեաշխը. Հետագայ իշխաններու Հայ անուններն վրացիներու այս կողման երկիրներու զէմ դարուց ի դարս մղած կռիւները — փաստեր, որոնք առանց տարակուսի ժամանակ ժամանակ վրական արիստոկրատութեան մը Հնարաւորութիւնը՝ Հաւանականութեան աստիճանէն անդին կ'անցընեն նաև. Ժ-Ա. դարէն յառաջ տեղւոյն վրայ գոյութիւն ունեցող Հայ իշխանութեան մը նշանաւորութիւնը. Իսկ Ժ-Ա. դարէն ետք մինչեւ Ժ-Բ. դար շատ տարակուսական տեղի չի մնար այլեւս, որ Կախեթի վրայ իշխողներն են Հայեր, եւ այն՝ Լոռի Կիւրիկեան ցեղէն. Պատմագիրներու Հակադիր տեղեկութիւնները ամփոփելով կը տեսնուի թէ Կախեթի մէջ 1039 – 1105 տարւոյ Հայ Լոռի Կիւրիկեան Հարստութիւն մը կը կազմուի չորս Հայազգի թագաւորներով. Ասոնք յաջորդներն են Վախուշտի յիշած ինն թագաւորներուն (787—1039). որոնց ազգութիւնը խնդրական է.

Կախեթի Կիւրիկեան Հարստութիւնը կը Հիմնուի Գագիկով (1039—1058), որ Վրաց

պատմագրին մօտ գրայ ձեւով ստացուած է։ Սա որդի էր Դաւիթ Անհողնի եւ կախեթի նախնիքին հարստութեան վերջին թագաւոր Կիւրիկէ Գ-ի (1010—1039) զամբը՝ Զօրաքերցիի (տես վերը, էջ 40)։ Այս խնամութիւնն արձանագրուած է Վարդան (էջ 101)․ «Դաւիթ խնամացաւ ընդ արքային Ձորոյգետոյ.» Այս Ձորոյգետը կախեթն է, ինչպէս կը հաւեւի Չամչեանէ (էջ 112), որմէ կ՚իմանանք նաեւ այս խնամութեան ծնունդը՝ Գագկայ անունը։ «Իսացաւոր կախեթոյ՝ Գագիկ․ որդին Հայոց արքայի»․ Գագիկ, զոր իր մեծ հայրը Կվիրիկէ որդեգրած էր, անոր մահէն ետք գահ կը բարձրանայ։ Իր կեանքէն ծանօթ են գրեթէ միայն պատերազմները։ Վարդանի համեմատ փառաւոր ամիրան «զոտ զնէ ընդ Գագկայ թագաւորին Ձորոյգետոյ»։ Վրաց հետ բարեկամական յարաբերութեան մէջ էր ի սկզբան. անոնց թագաւորին կ՚աջակցի Տփխիսի պաշարման ժամանակ ըստ Միհիթ Ալբիվանեցւոյ (էջ 59), որ այս առթիւ ըստ իր ամրութեան վերային սխալ մը կը գործէ հօր անունը նշանակելով Յովհաննէս փոխանակ Դաւիթի. «Բագարատ թագաւոր Վրաց էառ զՏփխիս ի Ջաֆրայ ազնականութեամբ Գագկայ թագաւորին կախեթոյ՝ որդւոյ Յովհաննէս թագաւորին.» Բայց իսկոյն կը գտնենք զինքը կռուի մէջ Բագարատի հետ Միքէլ եւ Գուրգիէլ լերան վրայ։ Թէեւ Տփխիսի գրաւումէն ետքը Գագիկ վերստին կը բարեկամանայ, սակայն շուտով կը հեռանայ անկէ.

թեւ. Թիկունք տալով Նիկեփորոս Բոտոնիատի, որ գլուխ քաշած էր թագաւորէն։ Դաւիթ կը վախճանի 1058ին եւ կը յաջորդէ որդին Աղսարթան (1058—1084)։ Դաւիթի ժամանակ արդէն Բագարատ տիրած էր Հերեթի, յաջորդին սրով բոլորովին հաստատեց իշխանութիւնը։ Սակայն երկայնատեւ չեղաւ։ Աղսարթան Տուղրիլ Բէկի ընդառաջ ելաւ, ընդգրկեց իսլամութիւնը եւ ի փոխարէն առ ստացաւ Հերեթ եւ Կախեթ։ Գէորգի Թագաւորին սպնեց ընդդէմ Նիկեփորի եւ Սարակինոսաց։ Երբ Գէորգի Բագտունի քովէն վերադարձաւ եւ վերջին ամբողջը պարպեց։ Աղսարթան գնաց Բայսունին որ անոր իշխանութիւնն ամրապնդեց եւ թլփատել տուաւ զինքը։ Մեռաւ 1084ին եւ գահը թողուց իւր որդւոյն Կիւրիկէ Դ.ի 1084—1102, որ քաջ եւ գործունեայ թագաւոր մ'էր եւ Ճշմարիտ քրիստոնեայ մը։ Վերջին թագաւորն է Աղսարթան՝ ըստ Վրաց՝ որդի, ըստ Հայ Յովանշէրի եղբօր որդի Կիւրիկէի, որ անբարոյական մեղկ մէկն էր եւ անարժան գահին, իւր բարքը պատճառ եղաւ որ 3 տարի իշխելէ ետք (1102—1105) Հերեթի եւ Կախեթի ազնուները միաբան, բռնեն զինքը եւ յանձնեն Դաւիթ Վերանորոգողի, որ ամբողջ Հերեթն ու Կախեթը նուաճեց։ Այսով վերջ կը գտնէ Կախեթի Կիւրիկեան հարստութիւնը։ Այս համառօտ ակնարկը կը բաւէ. ժամանակագրութեանց համար կարելի է դիմել Brosset ի ընդարձակ պատմութեան։

---

## ԿՈՐԻԿԷ ԿԻՒՐԱՊԱՂԱՏԻ ԴՐԱՄԸ

Կիւրիկեան թագաւորներու պատմութեան մէջ Դաւիթ Ա. թագաւորի վրայ խօսելու ժամանակ յիշեցինք "Կորիկէ" անուն կրող հայագիր դրամ մը, որ տիպով ու ընթերցուածով անծանօթ է մեր միւս ազգային գրագէտներուն. Մինչեւ հիմայ այս դրամէն երեք[1] օրինակ ծանօթ է. մին կը գտնուի Պետերբուրգի թանգարանին մէջ, զոր Բրոսէ իւր առջեւ ունեցած, ուսումնասիրած եւ հրատարակած է (տես Monographie, էջ 32 եւ տախտակ I. մեր քով ձեւ. 1 եւ 2). Երկրորդը Էջմիածին՝ նուիրուած Լալայեանէ, որ զայն Ջաւախք գաւառի մէջ գտած է (Հմմտ. Դասաւորութիւն Ռուբինեան դրամոց, էջ ժ) եւ երրորդ մը մեր Հաւաքածոյի մէջ. Էջմիածնինը՝ ըստ Լալայեանի՝ արծաթ է, միւս երկուքը պղինձ. Դրամին յառաջակողմը կը տեսնուի Քրիստոսի հանդիպահայեաց կիսանդրին՝ աջ ձեռքով գիրք մը բռնած երեսին երկու կողմը՝ Յ[ԻՍՈՒ]Ս — Ք[ՐԻՍՏՈ]Ս

---

[1] Կ'ըսուի թէ կան օրինակներ նաեւ Վիեննայի Մխիթարեան Հաւաքածոյին մէջ.

Ձեւագիրները. իսկ յետադարձը գրոշմուած են Հայերէն բառեր կամ անուններ։

Դրամիս նկատմամբ երկու կարեւոր խընդիր կը ներկայանայ մեր առջեւ. 1. ընթերցումը եւ 2. դրամին կոխող թագաւորը կամ իշխանը։ Երկու խնդիրներուս մասին ալ չեն պակսիր թեր ու դէմ կարծիքներ։ Բրոսէ, որ առաջին անգամ աշխատած է վերլուծել, կը կարդայ. + ՏՐ ՕԳՆԷ ԿՈՐԻԿԻ ԿՈՐԸ. Ը....




Ձեւ 1–2։

Լանգլուա (Numismatique de l'Arménie, էջ 28) անշուշտ իրեն աւելի լաւ ծանօթ Անտիոքի իշխաններու դրամներէն առաջնորդուած կը փորձէ ամբողջել՝ ՏՐ ՕԳՆԷ ԿՈՐԻԿ Ի ԿՈՐԸ ... Ը ... եւ այս ձեւական նմանութիւն կը կոչէ սա յունական ընթերցուածին հետ. KYPIE BOHΘEI TΩ ΔOVΛΩ COV TANKPIΔI (Տէր օգնեա ծառայի քո Տանկրէդի)։ Լանգլուա կը յիշէ նաեւ Ս. Ալիշանի եւ Գ. Այվազովսկիի փորձերը։ Ըստ Ս. Ալիշանի կարդալու է. ՏՐ ՕԳՆԷ ԿՈՐԻԿԻ եւ ԿՈՐԸ ԲԸԳԸԲԸՑ. իսկ ըստ Գ. Այվազովսկիի՝

## ՏՐ ՕԳՆԷ ԿՈՐԻԿԻ ԵՒ ԿՈՂԸԿՑԻՆ ՆՈՐԸ

Լալայեան եւս անդրադառնալով դրամիս կ'ընդգրկէ Թրոսէի ընթերցումը։ Եւ իրաւացի հարկ է ըսել, որ Թրոսէ ամէնէն աւելի մերձեցած է հարազատ ընթերցումին, մինչդեռ Լանգլուա Ս. Ալիշան եւ Գ. Այվազովսկի աւելի բառ կամ բառ կը ներմուծեն, քան առարկայապէս դրուածը կը կարդան։ Մանաւանդ Ս. Ալիշանի եւ Այվազովսկիի առուամբ մէջ բերուածները բոլորովին կը հակառակին հայ դրամներու վերնագրումներու եւ յուշարձանային նկարագիր ունին։ Թրոսէ անշուշտ գոհացուցիչ կերպով ի սպառ լուծած պիտի ըլլար (Հմմտ. էջ 33) եթէ իր դրամին գրերը ունենային այն մաքրութիւնը ու որոշութիւնը զոր կը ներկայացնէ մերը։ Կու տանք հոս մեր դրամին նմանահանութիւնը (ձեւ. 3—4). այսպէս տառանց տարակուսի անվարժ աչքն անգամ կրնայ կարդալ



Ձեւ. 3-4։

ներ տանց ապացոյցի, կամ՝ ապացոյցներ՝ այն-
քան խախուտ որքան ընթերցուածը։

Այն կարծիքը որուն դէմ կը մաքառի Լանգլուա՝ կը պատկանի մեծատուն գիտնական Բրոսէի, որուն այս կէտին մէջ կը համաձայնի Լալայեան։ Բրոսէ՝ Կիւրիկէ Ա. (բառ մը Գուրգէն) կը համարի խնդրոյ նիւթ դրամին տէրը։ Մէկ կողմանէ դրամին ձեւը կը յիշեցնէ Թամարի հօր Գէորգի Գ.-ին եւ նոյն իշխանուհւոյն որդւոյն Գէորգի դրամները. միւս կողմանէ Կիւրիկէ Ա. էր այս հարստութեան իշխաններուն մէջէն ամէնէն զօրաւորը։ Յարգելով հանդերձ Բրոսէի այս դիտողութիւնները, մենք աւելի ծանրակշռութիւն կու տանք դրամի վրայ դրոշմուած *Կուրապաղատ* տիտղոսին, քան որ կ'ընէ Բրոսէ։ Վեհապետներ որոնք թէ պատմագիրներու քով, թէ եկեղեցական եւ աշխարհական արձանագրութիւններու մէջ թագաւոր տիտղոսով կը յորջորջուին, կրնային միթէ թող տալ որ իրենց վեհապետական արտայայտիչ պետական դրամներուն վրայ պարզ *Կուրապաղատի* տիտղոսին նուաստանային։ Չենք կարծեր։ Միւս կողմանէ *Կիւրիկէ* անունը Լոռիի թագաւորներուն առանձնայատուկ չէ. դայն նաեւ Տայոց մէջ կը գտնենք[1], որուն իշխաններուն կը պատկանի նաեւ *Կուրապաղատ* տիտղոսը։ Մ եւ է պատճառ մը չունինք Տայոց իշխանի մը չվերա-

---

[1] Տեսնել Brosset, Hist. I, 272. 285. կը յիշուի Գուրգէն (= Կիւրիկէ) որդի Բագրատունի Բագարատ Թագաւորի. եղբայրն Աշոտայ. հայրն Դաւիթայ † 1012։

գրելու դրամն, քանի որ հոն իշխաններն այս արտօնութիւնը կը վայելէին[1]։ Մինչդեռ շատ տարօրինակ երեւոյթ պիտի ըլլար, եթէ Լեւոնի Ռուբինեան թագաւորին տանը ունենար իշխանութիւն մը, որմէ զուրկ էին Անւոյ Բագրատունիք եւ որոնց հպատակ էր անիկա։

Թէ ո՞ր շրջանին կ'իյնայ դրամս, կը դժուարինեմ պատասխանել։ Ոչ հայ եւ ոչ վրացի պատմագիրները ունին այս մասին յիշատակութիւն։ Դատելով հայերէն նշանագիրներու նկարագրէն, ըստ հնագրութեան, դրամս պիտի վերաբերի Ժ.—ԺԱ. դարու, ուր միջին մարզպետն եւ բոլորգիրը խառն երեւան կու գան։ Օրինակի համար «Դ», «Տ» շատ նման են 999ին կողովիա գրուած յիշատակարանի գրերուն (Հմմտ. Տաշեան՝ Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ, էջ 68)։ Այստեղ հետաքրքրական է նաեւ Կո-րակարդատ ձեւը, որ նաեւ 999ի Յիշատակարանին մէջ կը տեսնուի («Թաւթի կորաղաղարի»)։ Ասգմէ բառին ոգմէ ուղղագրութիւնը անշուշտ աշխարհիկ արուեստաւորին ագիտութենէն է, եւ չի կրնար հնութեան դէմ վկայ նկատուիլ։

---

[1] J. De Morgan, Histoire de Peuple Arménien Paris 1919, էջ 145։

